# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 11 • 88



*Հանձնված է արտադրության 30.08.88 թ.: Ստորագրված է տպագրության 26.11.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66232: Պատվեր՝ 1551: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 30.08.88 г. Подписано к печати 26.11.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 66232. Заказ 1551. Цена 15 коп.

Намечатано в типографии изд-ва ЦК КП Армении. пр. Орджоникидзе, 2.

**Շապիկի 1-ին էջին՝ ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ «ՎԵՐԱԾՆՈՒՆԴ» (հատված)**

Այստեղ հառնում են Հայաստանի ամենաբարձր լեռները: Սա մեր երկրի քարե տանիքն է, ուր դարեր առաջ Հայկը հաղթել է Բելին: Եկեք բռնենք այս գետի հունն ու Քաջքարի լեռներից իջնենք հովիտ: Տեսնո՞ւմ եք, դաշտ գահավիժելուն պես կտրուկ խոտորվում է, թեքվում Ծորոխ: Դրա համար էլ Խոտորջուր է կոչվում: Ափի Խոտորջուր հովտը, որ առաջ Մամիկոնյան իշխանների տոհմական կալվածքն էր, մի փոքրիկ գյուղ է եղել, հետո մեծացել, բաժանվել է թա-

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ




ղերի, թաղերն էլ մեծացել՝ Ծիճապատ, Կարմրիք, Միջնթաղ, Խանդաձոր, Մոխորկուտ անուններով գյուղեր են դարձել:

Հարյուր, հազար տարի էլ անցնի, հնարավո՞ր է մոռանալ, թե ինչպես հրդեհեցին այդ սիրուն գյուղերն ու ճերմակահեր կանանց, ծոցվոր հարսերին, մի մատ երեխաներին ծեծելով ու խոշտանգելով ճամփա հանեցին... Խոտորջուրցի տղամարդիկ Ռուսաստանում էին: Համարյա բոլորը: Բա Թիֆլիսի, Ռոստովի,

Դոնբասի, Խարկովի մեծ ու փոքր փռերը ովքե՞ր էին բանեցնում: Խնտորջուրցիների թխած հացն այնպիսի համ, հոտ ուներ, որ ով մի անգամ ուտում, ողջ կյանքում չէր մոռանում: Ի՞նչ օգուտ, նրանց ուշքն ու միտքը ծննդավայրն էր, դրա համար, հենց որ մի քանի կոպեկ էին հետ գցում, շտապում էին տուն...

Էլ ինչպե՞ս խնտորջուրցի կանայք, որ սովորել էին առանց ամուսնու ապրել, հանդուգն ու եռանդուն չլինեին: 1915 թվականի հունիսի 11-ին նրանք խուճապի




Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

չմատնվեցին: Նորածիններին դրին փայտե օրորոցների մեջ, օրորոցները շալակներն առան, ճամփա ընկան: Բայց երբ Խնտորջուրը աստիճանաբար սուզվեց սարերի, ամպերի մշուշում, այդ տղամարդ-կանայք անգամ չդիմացան: Փլվեցին, փղձկացին ու մի ձայնի երգեցին.

— Մնաս բարով, սիրուն Խնտորջուր,
Մնացեք բարով, սարեր ու ձորեր,
Ժամեր, մատուռներ,
Տուն ու թոնիրներ...

Երկինքը լսում էր նրանց ողբն ու, չէ, չէր ճաքում, լեռները փուլ չէին գալիս, վարարած ջրերը չէին քարանում: Ամենածեր խնտորջուրցին՝ Մարուզ մամիկը միայն, երբ Տեր-Զորի ճանապարհին տեսավ Ջեմալ փաշային, զգաց՝ նա է որոշելու իրենց ճակատագիրը, լինել-չլինելը: Հարավային ճակատի գերագույն հրամանատարը հեծել էր արաբական ճերմակ երիվարն ու զնգացնում էր ոսկյա ասպանդակները: Նայեց, նայեց Մարուզ մամիկն ու մեկ էլ քանդեց լաչակը, ճերմակ մազերը այտերն ի վար թափեց, չոքեչոք մոտեցավ:

— Փաշա,— ասաց,— քո գութն ենք աղերսում, թույլ տուր դառնանք մեր տները: Մենք կինարմատ ենք, որ տեղով կրակ էլ կտրենք, ի՞նչ կարող ենք անել: Խղճա...

Լսեց փաշան վերից, շատ վերից ու ոսկեհյուս մտրակով քորեց ականջի հետևը: Նրա դեմքին մի անհասկանալի, անբացատրելի ժպիտ հայտնվեց:

— Քավթառ ջադու,— մեկ էլ մտրակը ծեր մամիկի դեմքին շաչեցրեց,— կարծում ես միտքդ չե՞մ հասկանում: Ուզում եք ողջ մնաք, որ էլի հայ լակոտնե՞ր բերեք: Օձի էգն ու արուն չի լինում, հայ կանայք ավելի վտանգավոր են:

Նա մտրակը բարձրացրեց, որ մի՛ անգամ էլ խփի, բայց նկատեց ձիու սմբակների տակ լճացող արյունն ու ցույց տվեց Տեր-Զորը:

— Տարե՛ք, բոլորի՛ն տարեք...

Ու կանանց տարան:

Համբերիր, ընթերցող, այս դեպքը այսպես չվերջացավ: Եվ ոչ էլ Ջեմալ փաշայի արածը իրեն մնաց:

Խնտորջուրցի տղամարդիկ երկար, շատ երկար փնտրեցին իրենց մայրերին, կանանց, քույրերին ու երբ ոչ մեկին կենդանի չգտան, խորհրդի հավաքվեցին Խարկով քաղաքում: Լուռ, գլխիկոր նստել էին նրանք, ու դժվար էր ասել՝ ում վիճակն էր ավելի ծանր, մեռնողների՞, թե՞ այդպես ապրողների:

— Ուրեմն, հույս չմնաց, էլի,— կզակն ափերի մեջ առավ քեղուտցի Վարդան Տեր-Հարությունյանը:

— Չմնաց,— խուլ արձագանքեց թղաձորցի Այվազ Այվազյանը,— Խնտորջուրն ու խնտորջուրցին մեռած են: Կյանքն էլ մեզ համար իմաստ չունի:

Լռություն իջավ:

— Ունի,— հանկարծ վճռական ձայնեց ինչ-որ մեկը:

Բոլորը զարմանքով հետ շրջվեցին: Սրահի հեռավոր անկյունում մի նիհար, վտիտ երիտասարդ էր կանգնած, որի ցորենագույն այտերին գյուղական անմիջականություն կար: Նա մի պահ շփոթվեց իրեն ուղղված հայացքներից, հետո թափ տվեց ճակատի մազերը, առաջ գալով ասաց.

— Եղբայրներ, այդպես մի նայեք ինձ, ես էլ ձեզ նման հայ եմ, անունս Ակսել Բակունց է: Զանգեզուրից եկել, ուսանում եմ գյուղատնտեսական ինստիտուտում: Ճիշտ է, խոտորջուրցի չեմ, բայց հասկանում, լավ եմ հասկանում ձեր վիճակը, չգիտեմ էլ, թե ինչ կկատարվեր ինձ հետ, եթե իմ ծննդավայրն այդ օրն ընկներ: Այնուամենայնիվ շատ եմ խնդրում ձեզ, եղբոր, որդու պես եմ խնդրում, մի հուսահատվեք, լսեք իմ խորհուրդը...

Նա խորը շունչ քաշեց, կարծես կուլ տվեց կոկորդը քերող մի դառը զանգված, շարունակեց.

— Աստված մեզ էլ այդպիսի ճակատագիր է տվել: Մենք մեր թշնամուն ապրելով ենք հաղթելու, բայց դուք այնպես պիտի ապրեք, որ ձեր թոռները, ծոռները, ծոռների ծոռներն անգամ չմոռանան, որ իրենք խոտորջուրցի են: Դրա համար անպայման Նոր Խոտորջուր հիմնեք:

Զանգեզուրցին լռեց, արագ նստեց տեղը, բայց բոլորը շարունակում էին անթարթ նրան նայել: Չէին հասկանում, թե ով էր, ինչու էր մասնակցում իրենց խորհրդին: Եվ այդ ի՜նչ ասաց, որ սրահը տակնուվրա արեց..

Նախ հատուկենտ, հետո ավելի հաճախ այս-այն կողմից հավանության արձագանքներ լսվեցին: Ինչ-որ մեկն առաջարկեց հենց տեղում հանձնաժողովություն կազմակերպել, նոր բնակավայրի համար հիմնադրամ ստեղծել, ինչ-որ մեկը պահանջեց պատվիրակություն ուղարկել Թիֆլիս, դիմել անձամբ Ալեքսանդր Մյասնիկյանին:

... Տասը խոտորջուրցի Երևանից ճամփա էին ընկել մի սայլով, որի մեջ երկու գութան կար, երկու փոցխ, մի խոփ, մի քիչ շաքար ու մի նիհարիկ, նիհարիկ կով: Ընդամենը մի քանի օր առաջ, երբ նրանք Նոր Խոտորջուր հիմնելու խնդրանքով դիմել էին Ալեքսանդր Մյասնիկյանին, Անդրֆեդերացիայի գործադիր կոմիտեի նախագահը հազիվ էր զսպել շնորհակալությունների դողն ու արցունքոտ, բայց պայծառ հայացքով ասել.

— Գնացեք Հայաստան, որ հողը որ ձեզ դուր գա, որը որ ձեր ծննդավայրը հիշեցնի, այնտեղ էլ հիմնեք Նոր Խոտորջուրը: Վարկի մասին չմտածեք, ինչքան որ պետք է, կտանք:

Դրա համար էին խոտորջուրցի տղամարդիկ այդքան ոգևորված: Կոմունայի նախագահ Արտաշես Գևորգյանը չհամբերեց, որոշել էր, ճանապարհին Քանաքեռի խանութից կարմիր կտոր առավ, ու, քանի որ շատ լավ նկարել գիտեր, խոշոր տառերով գրեց. «Կեցցե Նոր Խոտորջուրը»:

Ճանապարհը շատ վատն էր, բայց խոտորջուրցիները Մարմարիկ գետի հովիտը մտան հայրենասիրական երգեր երգելով, բարձր-բարձր ճոճելով կարմիր պաստառը: Հանքավանում, անտառի փեշին փռված տափարակում նրանք իջան սայլից, բեռներն իջեցրին ու խփեցին առաջին կոմունան: Տարբեր տարիքի, տարբեր մասնագիտության մարդիկ միասին էին աշխատում, միասին ուտում, միասին քնում: Անձնական սեփականություն ոչ մեկը չուներ: Զապել Եսայանը, որ ընդամենը մի օրով էր եկել Խոտորջուր, բայց այնքան նոր, անսովոր բան էր տեսել շուրջը, որ մի շաբաթ մնացել էր, նկարագրում է, թե ինչպես էին երեք ընտանիք քնում նույն հյուղակի հողե հատակին և հավասարով նայում գրասենյակի պատին փակցված, անհրականալի թվացող կոչին. «Ամեն մի ընտանիքի՝ մի սենյակ»:

Անցավ քիչ, շատ քիչ ժամանակ, և խոտորջուրցիներն այդ երազանքը իրականացրին: Ինչպես ուրիշ շատ երազանքներ: Ամայության մեջ ծնված կոմունան ունեցավ իր անասնապահական ագարակը, յուղգործարանն ու պանրագործարանը, սկսեց զբաղվել ջերմատնտեսությամբ ու թռչնաբուծությամբ և կարճ ժամանակում այնքան հարստացավ, որ մի ամբողջ որբանոց տեղափոխել տվեց Նոր Խոտորջուր՝ իր խնամակալության տակ: Իզուր չէ, որ Նաիրի Զարյանը, Ակսել Բակունցը, Վահան Թոթովենցը անընդհատ հիացական ակնարկներ էին տպագրում Նոր Խոտորջուրի մասին, իսկ Թբիլիսիի «Զարյա Վաստոկա» թերթի հատուկ թղթակից Նիկոլայ Վերժնիբիցկին իր ակնարկաշարը այսպիսի խորագրերով էր բաժանել.

«Առաջին հրաշք», «Երկրորդ հրաշք», «Երրորդ հրաշք»...

1936 թվական: Դեկտեմբեր: Երևանի նկարչի տանը կազմակերպվել էր ինքնուս նկարիչ, Խոտորջուրի կոմունայի նախագահ Արտաշես Գևորգյանի ստեղծագործությունների ցուցահանդեսը: Արտաշեսն իր ցուցահանդեսի բացմանը ըսպասում էր անսքող հուզումով ու անհամբերությամբ, բայց այդպես էլ չկարողացավ ներկա լինել...

Հիշո՞ւմ եք, թե Տեր-Զորի անապատում խոտորջուրցի կանանց ինչպես սրի քաշել տվեց Ջեմալ փաշան: Դրանից մի քանի տարի անց, մի օր անսպասելի լուր եկավ, որ նա Քաբուլից տուն վերադառնալիս ցանկացել է քեֆ անել Քռի ափին, այն էլ Կախեթի գինիով: Խոտորջուրցիներն իրենց սովորության համաձայն խորհրդի հավաքվեցին ու որոշեցին, որ եթե իրենք իրենց կանանց վրեժը չլուծեն, ուրեմն տղամարդ չեն, պիտի լաչակ կապեն, գնան Քռուն ընկնեն:

Վերջին գիշերը Ջեմալ փաշան՝ նա, որին թրքական դատարանն անգամ հեռակա կարգով մահվան էր դատապարտել, զվարճանում էր ճոպանուղու աղմկոտ ռեստորանում: Այդ իմանալուն պես Արտաշես Գևորգյանն ու Պետրոս Տեր-Պողոսյանը, «մաուզեր» ատրճանակները գրպանները դրին, նետվեցին փողոց: Մյուս տասնմեկ խոտորջուրցիները հավասար հեռավորության վրա ժամապահ կանգնեցին փաշայի անցնելիք ճանապարհի ողջ երկարությամբ: Վերջապես...

Ջեմալն անձնական քարտուղարին կարգադրեց հաշիվը փակել ու թիկնապահներով շրջապատված դուրս եկավ: Նա, ըստ երևույթին, հարբած էր: Ոչ մի կերպ չէր ուզում կառք նստել, բռունցքը ճոճելով գոռում էր, որ ուր է ուր չէ Թուրքիան ոտքի կկանգնի, ծունկ կչոքեցնի բոլոր թշնամիներին ու իր սահմանները կհասցնի Բայկալ, Հնդստան: Թիկնապահները նրան թևանցուկ իջեցնում էին քաղաք ու մտքով հարմար պաշտոններ ընտրում այդ անծայրածիր կայսրության մեջ: Ահա նրանք անցան Պուշկինյան պուրակը: Դվարցովայան: Գալավինսկին: Երմոլովյան վերելքը: Նոր էին Պետրոս Մեծի փողոցը մտել, երբ Արտաշեսն ու Պետրոսը կարծես գետնի տակից ցցվեցին Ջեմալի դիմաց, և մինչ նա ձեռքը գրպանը կտաներ, ասացին.

— Մի շտապիր, փաշա, միտքդ բեր Տեր-Զորը, մեր ամեն նահատակներին: Չե՞ս ուզում հիշել, հիմա կհիշես...

Որոտացին զենքերը: Այս ամենն այնքան արագ տեղի ունեցավ, որ Ջեմալը չհասցրեց ձեռքը գրպանը տանել, օրորվելով ընկավ փողոցի սալահատակին, ու դեմքին ճիշտ այն ժպիտն ուրվագծվեց, երբ Մարուզ մամիկը ծնկաչոք խնդրել էր խնայել կանանց կյանքը: Հենց այդ ժպիտն էլ սառեց փաշայի դեմքին ու հավերժ մնաց...

Այս դեպքը բավական էր, որ 1936 թըվականի դեկտեմբերի 23-ին Արտաշես Գևորգյանին թույլ չտային իր ցուցահանդեսի բացմանը ներկա լինել ու կալանավորելով, առանց դատ-դատաստանի գնդակահարեին (հետո, իհարկե, հետմահու արդարացրին, անունը հանրագիտարանների մեջ մտավ): Բայց այն ժամանակ միայն դրանով չգոհացան: Կոմունայում, Երևանում, Թբիլիսիում, Խարկովում, անգամ Մոսկվայում ապրող բոլոր խոտորջուրցի տղամարդկանց որպես վրիժառուների ձերբակալեցին ու բանտ նետեցին, աքսորեցին, գնդակահարեցին:

Կոմունան ավերակ դարձավ...

Ինչո՞ւ եմ քեզ պատմում այս ամենը, պատանի ընթերցող: Ամառային արձակուրդներին դու հաճախ ես հանգստանում Հանքավանի պիոներական ճամբարներում և գրեթե ամեն օր լինում ես Մարմարիկի հովտում, որի ձախ ափին անտառի փեշի տակ գտնվում էր Խոտորջուրի կոմունան: Մինչև հիմա էլ մացառների մեջ դեռ մնում են խոտորջուրցիների՝ խանդավառությամբ ու հույսով կառուցած տների հիմքերը: Եթե դու կանգնես կոմունայի բարձունքին, ապա գետի հանդիպակաց ափին բազալտե մի սրբատաշ ժայռ կտեսնես: Ամեն անգամ, երբ ես նայում եմ այդ ժայռին, ինձ թըվում է՝ բնությունը հատուկ է հղկել ու ճիշտ այդ վայրերում է այն տեղադրել, որպեսզի գալիք սերունդները վրան փորագրեն Նոր Խոտորջուրի՝ Սովետական Հայաստանի անդրանիկ կոմունայի հիմնադիրների անունները: Ու քանի որ Մարմարիկի հովտի ամենառոմանտիկ բնակիչը դու ես, կարծում եմ, դու պիտի նախաձեռնես այդ նվիրական գործը: Դու, քո ջոկատը, դրուժինան, ճամբարը: Կամ ով գիտե, թերևս բոլորը: Միասին: Իմացիր, խոտորջուրցիները հավատում էին այդ օրվան: Նրանք այդ օրվան սպասում են...



ԿԱՐԵԼ ՉԱՊԵԿ

# ՄԱՐԴԸ, ՈՐ ԿԱՐՈՂԱՆՈՒՄ ԷՐ ՍԱՎԱՌՆԵԼ

Թարգմանեց ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ
Նկարները՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



Տոմշիկը քայլում էր հիվանդանոցի ճանապարհով: Նա իր ամենօրյա զբոսանքն էր կատարում, քանի որ շատ էր հոգում իր առողջության մասին և ընդհանրապես մոլի մարզիկ էր, ոչ մի ֆուտբոլային խաղ բաց չէր թողնում: Նա արագ ու թեթև էր քայլում: Գարնանային մթնշաղն արդեն իջել էր աշխարհի վրա, և Տոմշիկը միայն պատահական անցորդների, հազվադեպ էլ՝ սիրահարված զույգերի էր հանդիպում: «Քայլաչափ պետք է գնել,— մտածեց նա,— և ստուգել, թե օրը քանի քայլ եմ անում ես»:

Հանկարծ Տոմշիկը հիշեց այն երազը, որ տեսնում էր երեք գիշեր շարունակ. գնում է ինքը փողոցով, և ծնկներ երեխային մանկասայլակով տանող մի կին փակում է իր ճանապարհը, Տոմշիկը ձախ ոտքով թեթև թափ է առնում, պոկվում է գետնից, մի երեք մետր վեր սլանում, սայլակավոր կնոջ վրայից թռչում ու սահուն իջնում մայթին:

Երազում նա ամենևին չզարմացավ. այդ խոյացումը նրան բնական և շատ հաճելի թվաց. տարօրինակ էր միայն այն, որ մինչև օրս ոչ ոք նման բան չէր ըզգացել: Մինչդեռ ինչ հասարակ բան էր. բավական էր, որ մի թեթև թափահարեր ոտքերը, ինչպես հեծանիվ նստած ժամանակ, և ահա, համբառնում է վեր, երկրորդ հարկի բարձրության վրա ճախրում և անլսելի իջնում գետնին: Ոտքով հըրվում ես ու նորից թռչում, թեթև-թեթև, կարծես հսկայական փուչիկների վրա նստած: Նույնիսկ կարելի է գետնին չդիպչել, այլ ուղղակի ոտքերը պտտել, և թռիչքը կշարունակվի: Տոմշիկը երազում բարձր ծիծաղեց. այսինքն ինչպե՞ս թե, ինչո՞ւ մինչև օրս ոչ ոք գլխի չի ընկել: Ախր, սա ավելի հեշտ ու ավելի հասարակ բան է, քան քայլելը,— մտածում էր նա երազում: Վաղը պետք է փորձել:

Տոմշիկը շուրջը նայեց: Ոչ ոք չկար: Տոմշիկը հենց այնպես, կատակի համար թափ առավ, ձախ ոտքով գետնից հրվեց կարծես ջրափոսի վրայից թռչելիս... և հանկարծ երեք-չորս մետր վեր խոյացավ ու, գետնից վեր մի ոչ այնքան բարձր կամար գծեց: Նա նույնիսկ չզարմացավ. դա ինկապես էլ շատ հեշտ ըստացվեց և միայն հաճելի հուզմունք էր սպառնաճառում, ինչպես կարուսել նստելը: Քիչ մնաց, որ մանկական հրճվանքից Տոմշիկը բղավեր: Մի երեսուն մետր թըռ-

չելով, նա արդեն գետնին էր մոտենում, բայց տեսավ, որ ճիշտ ցեխի մեջ է իջնում: Այն ժամանակ Տոմշիկը թափահարեց ոտքերը, ինչպես երազում էր անում և, իսկապես, նորից վեր խոյացավ, մի տասնհինգ մետր էլ թռավ ու թեթև իջավ Ստրաշնիցեից եկող մի անցորդի թիկունքում: Սա կասկածամտորեն ետ նայեց. նրան պարզորեն դուր չեկավ, որ իր կողքին հայտնվեց մի մարդ, որի ոտնաձայները ինքը չլսեց: Ամենաանբռնազբոս տեսքով Տոմշիկը նրանից առաջ անցավ, թեև հոգու խորքում մի քիչ վախենում էր, թե հանկարծ, չափազանց եռանդուն քայլ անելով, գետնից կկտրվի ու նորից վեր կխոյանա:

«Սա լավ պետք է ստուգել»,— ասաց ինքն իրեն և նույն ամայի ճանապարհով դեպի տուն դիմեց: Բայց հակառակի պես նրան շարունակ սկսեցին անցորդներ պատահել. մեկ՝ սիրահարված զույգեր, մեկ՝ երկաթուղայիններ: Այն ժամանակ նա դեպի ամայի դաշտ թեքվեց, որը տարիներ շարունակ քաղաքի աղբավայրն էր: Արդեն բոլորովին մթնել էր, սակայն Տոմշիկը չէր ուզում հետաձգել փորձարկումը, վախենալով, որ մինչև վաղը թռչելը կմոռանա: Չափազանց վեհերոտ նա ետ մղվեց, մի մետրի չափ վեր խոյացավ և բավական ծանր գետին իջավ: Երկրորդ անգամ նա ձեռքերով օգնում էր իրեն, կարծես լողում էր, այդպես մոտ ութսուն մետր թռավ, նույնիսկ կիսաշրջան գործեց և թեթև, ճպուռի պես գետնին նըստեց: Տոմշիկն ուզեց մի անգամ էլ բախտը փորձել, բայց այդ պահին լույսի մի խուրձ ընկավ նրա վրա, և կոպիտ մի ձայն հարցրեց.

— Ի՞նչ եք անում:

Ոստիկանության պարեկն էր:

Տոմշիկը սոսկալի շփոթվեց և քրթմընջաց՝ մի քիչ մարզանք եմ կատարում:

— Կորեք այստեղից,— բղավեց ոստիկանը,— և ավելի հեռվում կատարեք ձեր մարզանքները, այստեղ արգելված է:

Ճիշտ է, Տոմշիկը չհասկացավ, թե ինչու չի կարելի, իսկ մի ուրիշ տեղ կարելի է, բայց քանի որ նա կարգապահ քաղաքացի էր, բարի գիշեր մաղթեց ոստիկանին և փութկոտ հեռացավ, վախենալով միայն մի բանից. հանկարծ, աստված մի արասցե, նորից վեր չխոյանա. այդ էր պակաս, որ ոստիկանությունը կասկածի տակ առներ իրեն: Միայն առողջապահության պետական ինստիտուտի մոտ նա նորից վեր թռավ, թեթև անցավ ցանկապատի վրայով ու թևերը թափահարելով սավառնեց ինստիտուտի պարտեզի վրայով և վայրէջք կատարեց Գլխավոր պողոտայի վրա, գարեջրի սափորը ձեռքին մի աղախնի առջև: Սա ճըչաց ու փախուստի դիմեց: Տոմշիկը հաշվեց, թե որքան է ինքը թռել. մոտ երկու հարյուր մետր: Սկզբի համար վատ չէ:

Հետևյալ օրերին նա ջանադիր կերպով վարժվում էր, հասկանալի է՝ միայն գիշերները և ամայի վայրերում, ավելի հաճախ՝ Օլշանիի հրեական գերեզմանատան մոտ: Նա տարբեր ձևեր էր փորձում, օրինակ՝ թափավազքով վեր խոյացում, շեշտակի վերելք՝ կանգնած տեղից: Առանց դժվարության, միայն ոտքերը շարժելով, նա մոտ հարյուր մետր էր բարձրանում, բայց ավելի բարձր չէր համարձակվում: Հետո սկսեց յուրացնել վայրէջքի տարբեր տեսակները՝ սահուն վայրէջքը ու դանդաղեցրած անկումը. ամեն ինչ կախված էր այն բանից, թե ինչպես ես աշխատում թևերով: Տոմշիկը տիրապետում էր արագության և ուղղության փոփոխությանը, փորձում էր քամու ուղղությանը հակառակ թռչել, բեռնավորված թռչել, տարբեր բարձրությունների վրա սավառնել և այլն: Գործը սահուն առաջ էր գնում, և նա հետզհետե ավելի ու ավելի էր զարմանում, թե ինչու մարդիկ գլխի չեն ընկել թռչել: Ըստ երևույթին, միայն այն պատճառով, որ մինչև օրս ոչ ոք չի փորձել...

Մի անգամ Տոմշիկը օդում նույնիսկ տասնյոթ րոպե դիմացավ, բայց, ի վերջո, հեռախոսալարերին դիպավ և շտապեց վայր իջնել: Մի գիշեր էլ Ռուսական պողոտայում վարժություններ անելիս նա չորս մետր բարձրությունից իր տակ երկու ոստիկան նկատեց: Տոմշիկն իսկույն առանձնատները շրջապատող այգիների կողմը թեքվեց: Ականջ ծակող ոստիկանական սուլոցները ճեղքեցին գիշերային լռությունը: Մի քանի րոպեից Տոմշիկն արդեն ոտքով վերադարձավ այդտեղ ու տեսավ, որ վեց ոստիկան լապտերիկներով մերձակա պարտեզներն են խուզարկում, փնտրելով գողին, որը «նրանց աչքի առաջ հենց նոր անցավ ցանկապատի վրայով»:

Միայն այժմ Տոմշիկը կռահեց, որ թռչելու ունակությունը չտեսնված հնարավորություններ է ընձեռում իրեն, սակայն ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ,

թե ինչ ձևով օգտագործի դրանք: Մի գիշեր նա գայթակղվեց Սուրբ Իրժիի հրապարակի վրա գտնվող տան չորրորդ հարկի բաց պատուհանով: Թեթև պոկվելով գետնից, Տոմշիկը հասավ պատուհանին և նստեց գոգին, չիմանալով, թե ինչ անի հետո: Սենյակից խոր քնած մարդու խռմփոց էր լսվում: Տոմշիկը սենյակ մտավ: Նա գողություն անելու միտք չուներ և այդ պատճառով կանգնել էր այն ուժգին ամոթխածությամբ համակված, որ սովորաբար զգում ենք մենք օտար կացարանում պատահաբար հայտնըվելիս: Հետո հառաչեց ու նորից դուրս եկավ պատուհանից: Բայց չէ՞ որ պետք էր որևէ հետք թողնել, իր մարզական նվաճումի որևէ մի վկայական: Տոմշիկը գրպանից մի թղթի կտոր հանեց և մատիտով վրան գրեց. «Եղա այստեղ: Վրիժառու իքս»: Երկտողը նա սեղանին դրեց և օդով կամացուկ ցած իջավ: Տանը պարզվեց, որ թղթի կտորը իր հասցեով ու ազգանվամբ մի ծրար էր եղել: Բայց Տոմշիկը այլևս համարձակություն չունեցավ վերադառնալու: Մի քանի օր ոստիկանությունից խուզարկումներ սպասելով, նա վախից դողում էր, բայց, որքան էլ տարօրինակ թվա, ոչ մի բարդություն էլ չծագեց:

Վերջապես Տոմշիկի համբերությունը սպառվեց. թռիչքները նրա համար մնում էին սոսկ որպես գաղտնի զվարճություններ, իսկ նա ուզում էր դրանք համընդհանուր հետաքրքրության առարկա դարձնել: Բայց ինչպե՞ս: Չէ՞ որ թռչելն այնքան հասարակ բան է. ոտքով հրում ես, մի թեթև թափահարում ես թևերդ և թռիր քեզ համար ծիտիկի պես... Միգուցե դա մի նոր մարզաձև՞ դառնա: Կամ, օրինակ, միանգամայն հնարավոր է, որ թեթևացնի երթևեկությունը, եթե մարդիկ սկըսեն տեղափոխվել օդով: Կարելի կլինի յոլա գնալ առանց վերելակների: Եվ ընդհանրապես հնարավորությունները հըսկայական են: Տոմշիկի պատկերացումները դրանց մասին, ճիշտ է, շատ մշուշապատ էին, բայց, վերջ ի վերջո, ամեն բան իր տեղը կընկնի: Յուրաքանչյուր մեծ գյուտ սկզբում դատարկ բան է թվացել:

Տոմշիկը մի հարևան ուներ՝ Վոյտա անունով կերած-խմած մի երիտասարդ: Սա աշխատում էր թերթի խմբագրությունում. կարծես թե որպես մարզական բաժնի լրատու: Եվ ահա մի օր Տոմշիկը մտավ այդ Վոյտայի մոտ և, մի քիչ ճընշվելով, հայտարարեց, որ կարող է հարևանին մի հետաքրքիր բան ցույց տալ: Նրա տեսքն այնքան խորհրդավոր էր, որ Վոյտան մտածեց. «Այ քեզ բան», բայց, այնուամենայնիվ, թույլ տվեց իրեն համոզել, և երեկոյան ժամը ինին մոտ նըրանք միասին դեպի հրեական գերեզմանատուն գնացին:

— Հիմա տեսեք, պարոն լրատու,— ասաց Տոմշիկը, ոտքով հրվեց գետնից և մոտ հինգ մետր վեր բարձրացավ: Այնտեղ նա սկսեց զանազան ճարպկություններ անել. թևերը թափահարելով իջնում էր մինչև գետին, նորից վեր բարձրանում և նույնիսկ մի ութ վայրկյան անշարժ կախված մնաց օդում:

Վոյտան չափազանց լրջացավ և փորձեց պարզել, թե ինչպես է դա հաջողվում Տոմշիկին: Սա համբերությամբ բացատրում էր. պետք է միայն ոտքով հրվել ուրիշ ոչինչ: Ոչ, պարոն Վոյտա, սա ամենևին ոգեկոչության երևույթ չէ, և այստեղ ոչ մի գերբնական ուժ չկա, նույնիսկ մկանների ու կամքի լարում չի պահանջվում: Տեղիցդ թռչում ես ու ճախրում...

— Ինքներդ փորձեք, պարոն լրատու,— համոզում էր Տոմշիկը, բայց Վոյտան գըլուխն էր տարուբերում միայն:

— Ոչ,— մտախոհ ասաց նա,— առանց ձեռնածության բան դուրս չի գա: Բայց ես կկռահեմ դա: Իսկ առայժմ, պարոն Տոմշիկ, այլևս ոչ ոքի չցուցադրեք:

Հետևյալ օրը Տոմշիկը Վոյտայի ներկայությամբ թռչում էր հինգ կիլոգրամանոց կշռաքարերը ձեռքին: Պարզվեց, որ դա ավելի դժվար է, և նա հազիվ երեք մետր բարձրության հասավ, բայց Վոյտան գոհ էր: Երրորդ անգամից հետո լըրատուն ասաց.

— Լսեցեք, պարոն Տոմշիկ, չեմ ուզում վախեցնել, ձեզ, բայց սա լուրջ գործ է: Նման թռիչքներն առանց որևէ ապարատի օգնության կարող են կարևորագույն նշանակություն ունենալ, օրինակ՝ պաշտպանական նշանակություն, հասկանու՞մ եք: Ձեզնով մասնագետներ պետք է զբաղվեն: Ձեր թռիչքները պետք է փորձագետներին ցուցադրել, պարոն Տոմշիկ: Ես ամեն բան կկարգադրեմ:

Եվ այսպես, մի հրաշալի օր Տոմշիկը կիսավարտիքով ֆիզիկական կուլտուրայի պետական ինստիտուտի բակում ներկայացավ չորս փորձագետների: Նա սոսկալի ամաչում էր իր մերկությունից, հուզ-



վում էր, դողում ցրտից, բայց Վոլոդան անողոք էր՝ իբր անհրաժեշտ է կիսավարտիքով լինել, որպեսզի երևա, թե ինչպես են աշխատում մկանները: Փորձագետներից մեկը՝ մի ճաղատ, հաստ մարդ, պարզվեց, որ համալսարանի ֆիզկուլտուրայի պրոֆեսոր է: Նրա տեսքը միանգամայն անմատչելի էր, իսկ դեմքին տպված էր, թե գիտական տեսակետից այս բոլորը անհեթեթություններ են: Նա անհամբեր նայում էր ժամացույցին և ինչ-որ բան փնթփնթում:

— Դեհ, պարոն Տոմչիկ,— ոչ առանց հուզմունքի ասաց Վոլոդան:— Եկեք թափավազքով թռիչքից սկսենք:

Տոմչիկը վախվորած նետվեց առաջ:

— Սպասեցեք,— կանգնեցրեց նրան մյուս փորձագետը:— Ձեր մեկնարկը չափազանց սխալ է: Մարմնի ծանրության կենտրոնը պետք է ձախ ոտքին փոխանցել: Հասկանալի՞ է: Կրկնեք:

Տոմչիկը վերադարձավ ու փորձեց ծանրության կենտրոնը ձախ ոտքին փոխանցել:

— Իսկ ձեռքե՛րը, ձեռքե՛րը,— սովորեցնում էր փորձագետը:— Դուք, ախր, չգիտեք, թե ինչ անեք ձեր ձեռքերը: Դուք դրանք այնպես պահեք, որ կրծքավանդակի ընդարձակմանը չխանգարեն: Եվ հետո, թափավազք կատարելիս պահեցիք ձեր շունչը. այդպես չի կարելի: Պետք է խոր և դանդաղ շնչել: Հապա մի անգամ էլ:

Տոմչիկն իրեն կորցրեց: Հիմա նա իսկապես էլ չգիտեր, թե ինչպես պահեր ձեռքերը և ինչպես շնչեր: Նա շփոթված աշխատում էր հասկանալ, թե որտեղ է իր ծանրության կենտրոնը:

— Հառաջ,— բղավեց Վոլոդան:

Տոմչիկն անվստահ թափահարեց ձեռքերը և վազեց: Հազիվ էր նա պոկվել տեղից, երբ մարզիչն ասաց.

— Սպասեցեք, վատ է:

Տոմչիկն ուզեց կանգ առնել, բայց արդեն չէր կարող: Նա անեռանդ գետնից հրվեց ոտքով, մի կես մետր բարձրացավ և, մարզիչին ենթարկվելով, իսկույն գետին իջավ ու մնաց կանգնած:

— Շատ վատ է,— բացականչեց մարզիչը:— Իսկ ծնկածալումն ո՞ւր մնաց: Պետք է ընկնել ոտնաթաթերի ծայրերին և, զսպանակելով, պպզել: Իսկ ձեռքերն առաջ նետել, հասկանալի՞ է: Որպեսզի անկման իներցիա հաղորդեք դրանց: Դա միանգամայն բնական շարժում է: Սպա-

սեցեք,— շարունակեց նա,— ես ցույց կտամ ձեզ, թե ինչպես պետք է թռչել: Ուշադիր ինձ նայեք:— Նա հանեց բաճկոնը և մեկնարկի եկավ:— Ուշադրություն դարձրեք. մարմնի ամբողջ ծանրությունը՝ ձախ ոտքին: Ոտքը կիսածալված է, և մարմինը առաջ է հակված: Արմունկները տանել ետ և այդպիսով կրծքավանդակը տարածել: Արեք՝ ինչպես ես եմ անում:

Տոմշիկը ենթարկվեց: Նա երբեք այդքան անհարմար դիրք չէր ընդունել:

— Դուք պետք է վարժություններ կատարեք,— նկատեց մարզիչը:— Իսկ հիմա նայեք: Տեղից պետք է պոկվել ու վազել:— Նա առաջ նետվեց, մի վեց քայլ վազեց, ետ մղվեց, թռավ, թևերը գեղեցիկ թափահարեց և, առաջ նետելով ձեռքերը, գեղանիորեն ոտքերի ծայրերին ընկավ:— Ահա թե ինչպես պետք է անել,— ասաց նա, շալվարը վեր քաշելով:—Կրկնեք:

Վիրավորված Տոմշիկը հարցական նայեց Վոյտային: Անցայման այդպե՞ս է պետք:

— Հապա, մի անգամ էլ,— ասաց նա, և Տոմշիկը կծկվեց իրեն հանձնարարված դիրքում:— Հառաջ:

Տոմշիկն ամեն ինչ շփոթեց ու վազեց ոչ այն ոտքից, որ պետք էր: «Միգուցե այնքան էլ կարևոր չէ, որ ես ձեռքերս առաջ նետեմ, ինչպես նա կարգադրեց, և այդ ծնկածալումը կատարեմ»,— վախեցած մտածում էր նա վազելիս և քիչ մնաց մոռանար տեղից թռչելը: Բայց ահա նա արագ վեր մղվեց գետնից… «Միայն թե ծնկածալումով ցած ընկնեմ», առկայծեց նրա գլխում: Տոմշիկը կես մետրը վեր թռավ և մի մետր ու կես թռչելուց հետո ցած ընկավ: Հետո փութկոտ պպզեց ու ձեռքերն առաջ նետեց:

— Բայց դուք, ախր չսավառնեցիք, պարոն Տոմշիկ,— բացականչեց Վոյտան:— Խնդրեմ, կրկնեք:

Տոմշիկը նորից թափ առավ ու ընդամենը մի մետր ու քառասուն թռավ, բայց դրա փոխարեն ոտնաթաթերի ծայրերին ընկավ ծնկածալումով և ժամանակին առաջ նետեց ձեռքերը: Քրտինքի մեջ կորել էր, սիրտն ուժգին բաբախում էր: «Տեր աստված, գոնե ինձնից ձեռ քաշեին»,— մտածում էր նա:

Հետո երկու անգամ էլ թռավ, բայց հետագա փորձերից ստիպված եղան հրաժարվել:

Այդ օրվանից Տոմշիկն այլևս չէր կարողանում սավառնել:



ՋՈՒԼԻԵՏ ՄԱՏԻՆՅԱՆ

# ԾԻԾԱՂԻՐ, ՈՐ ՄԱՔՐՎԵՍ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Մի անգամ մի չար հարևան ուզում է իր բարի հարևանին ցավ պատճառել: Նա ասում է՝ էն տանձն ու խնձորը ինչի՞ երեխեքիդ չես տալիս: Բարի հարևանը սրտնեղած շուռ-մուռ է գալիս նստած տեղում, ուզում է վեր կենալ գնալ մառան, բայց հիշում է, որ այնտեղ ոչ տանձ է մնացել, ոչ խնձոր:

— Այ մարդ, քո ի՞նչ գործն է՝ ես իմ երեխեքին ինչ կտամ:

Երեխեքն էլ, կարծելով, որ հայրը իսկապես տանձ ու խնձոր է պահել ու չի տալիս իրենց՝ ձայները գլուխներն են գցում: Սրտնեղած հայրը չիբուխի ծուխը

այնպես է ներս քաշում, որ թութունը սկըսում է այրվել: Վառվող չիբուխի ծուխը գալարվում է, բոցը՝ մեծանում: Բոցը գալարվելով ճյուղեր է տալիս ու մի գեղեցիկ ծառ է դառնում: Բոլորը քարանում են: Չար հարևանի աչքերը չորս են լինում: Էդ ծառի ճյուղերից տանձ ու խնձոր է կախվում, որ ոչ մի երկրում, ոչ մի աշխարհում ոչ մի ծառ չի ունեցել: Ծառը իր լեզվով ասում է.

— Վայելեք իմ պտուղները:

Չար հարևանը ագահությամբ վրա է պրծնում, բայց ոչ մի պտուղ ձեռքը չի ընկնում: Երեխաները սկսում են ծիծաղել, չար հարևանն ավելի է կատաղում: Վիրավորանքից ու նախանձից կացինը ձեռքն է առնում, որ ծառը կտրի: Բայց կացինը ծառին դիպչելով ետ է թռչում: Այստեղ էլ բարի հարևանն է սկսում ծիծաղել: Չար հարևանը կատաղությունից սկսում է ծառի արմատները կրծել: «Խելագարվեց»,— մտածում են: Այստեղ էլ ծառն է սկսում խտուտ առնել, ծիծաղել, վրայի պտուղներն էլ: Ծիծաղում են քահքահ ու սրտալի: Այնքան վարակիչ են ծիծաղում, որ շրջապատի տներն էլ են սկսում ծիծաղել, շրջապատի մարդիկ էլ, գյուղերն էլ, քաղաքներն էլ: Չար հարևանը ամոթից ու կատաղությունից մազերն է փետում: Բարի հարևանը խղճում է նրան.

— Վեր կաց, բոլորը ծիծաղում են, դու էլ ծիծաղիր, կանցնի, կգնա:

Չարը անհարմարությունից ու սրտնեղությունից ճարահատյալ ինքն էլ է սկըսում ծիծաղել: Բայց հո չի ծիծաղում, աչքերից կայծեր են թռչում:

— Որ ծիծաղում է, ուրեմն լավ է, մաքըրվում է,— ասում է հրաշք ծառը և ճյուղերը մեկնելով՝ տանձ ու խնձոր է բաժանում բոլորին: Դառնալով Չար մարդուն՝ ասում է.

— Որպեսզի քո մեջ բարություն մտնի, խորը շնչիր, և որպեսզի քո միջի չարությունը դուրս գա, լավ արտաշնչիր,— և ծիծաղելով անհետանում է:

— Լավ շնչիր, արտաշնչիր,— արձագանքում են շրջապատի տները, գյուղերը, քաղաքներն ու ողջ աշխարհը:

Ահա ինչու մարդիկ խոր շնչում են, որ իրենց մեջ բարություն մտնի, և լավ արտաշնչում են, որ իրենց միջի չարությունը դուրս գա:

Մարդիկ ծիծաղում են, որ մաքրվեն:



ՀՐԱՉՅԱ ՍԱՐՈՒԽԱՆ

## Հայաստան

Դու իմ հետադարձ հացեն ես միակ
Եվ իմ եզակի ճակատագիրը,
Իմ բաց երգերը, իմ վերքերը փակ
Իմ հիշատակաց միակ Երկիրը.. .

Անկրկնակոչիկ Համապատմության
Սայթաքումները մեզ աղավաղել
Եվ բաց երգերս փակ վերքերիս մեջ
Սատանայաբար փորձել են թաղել,
Որպեսզի դառնամ թափառող ծրար՝
Չունենամ նույնիսկ հետադարձ հասցե,
Բայց մենք վերստին փարվել ենք իրար,
Համբերաքանել՝ Տեր, մի արտասցե...

Դու իմ հետադարձ հասցեն ես միակ,
Իմ անկրկնելի ճակատագիրը,
Իմ բաց երգերը, իմ վերքերը փակ,
Իմ հիշատակաց միակ Երկիրը:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# ՍՊԱՍՈՒՄ ԵՄ ՁԵՐ ԵՐԿՏՈՂԵՐԻՆ...

Լուսանկարը՝ ԹԱԹՈՒԼ ՍԱՐԻԲԵԿՅԱՆԻ

Ես մինչև այսօր էլ ինձ ինչ-որ տեղ նաև աշակերտ եմ զգում, որովհետև իմ ուսուցիչների մեջ բարեբախտաբար եղան այնպիսիները, որոնք մինչև այսօր էլ ինձ իրենց աշակերտն են համարում: Ես միշտ անուն առ անուն հիշելու եմ նրանց: Հիշելու եմ, ինչպես մեր միջնադարյան գրիչներն ու ծաղկողներն են հիշատակել այն մարդկանց անունները, որոնք մի կտոր հաց ու պանիր են ուղարկել իրենց՝ մատյան նորոգելիս, գրելիս կամ ծաղկելիս: Թվում է՝ ի՞նչ մեծ բան է՝ մի կտոր հաց ու պանիր: Բայց չէ՞ որ այդ «մի կտորը» դարձել է հոգևոր սնունդ, որ ժողովրդին հավիտենականության ճանապարհն է ցույց տվել: Եվ ինչպես մեր հիշատակարաններում է ասվում, ի՞նչն է ապրեցնում մարդուն այս աշխարհում մահից հետո, եթե ոչ թողած բարի անունը:

Ես մտքիս մեջ ուրախանում եմ, որ իմ ուսուցիչներն էլ ինձ չեն մոռանում: Ուրեմն՝ ես չեմ դավաճանել նրանց, երևի այնպիսին եմ դարձել, ինչպիսին իրենք են ցանկացել ինձ տեսնել: Նրանց կողմից իմ հիշվող գոյությունը գուցե իրենց սեփական գործ-ճակատագրի, ապրած տարիների նկատմամբ վստահության ինչ-որ պատվար է դարձել: Եթե այդպես է՝ նշանակում է՝ մենք՝ աշակերտներս, մեր կյանքը պետք է այնպես ապրենք, որ ուսուցիչները չզրկվեն նման հոգևոր-բարոյական հենարանից: Իսկ ուսուցիչները, իսկական ուսուցիչները միշտ էլ ի դեմս իրենց աշակերտների հոգևոր-բարոյական հենարան են փնտրում: Չկա ուսուցիչ՝ առանց աշակերտի, չկա աշա-

կերտ՝ առանց ուսուցչի: Եվ հենց այնպես ուսուցիչ էլ չի լինում: «Որ ուսուցիչ անունը կրում է, ուրեմն պետք է որ լավը լինի»,— սա Երևանի № 159 դպրոցի աշակերտ Արայիկ Գասպարյանի կարծիքն է:

Ես վերջերս հանդիպեցի առանց աշակերտների մնացած մի ուսուցչի: Նրանից աշակերտները երես էին թեքել: Դժվար էր մինչև վերջ խորանալ և իմանալ բուն պատճառը: Երեխաները բողոքում էին, թե նա տեղի-անտեղի թվանշաններ է նշանակում, իրենց անպատվում, խփում է: Երևի բոլոր դպրոցներում էլ նման ուսուցիչներ կան: Բայց ամեն տեղ չէ, որ աշակերտների վերաբերմունքն այդ ուսուցիչների նկատմամբ նույնն է: Երևանի № 88 դպրոցի աշակերտ Էդիկ Բաղդասարյանն, օրինակ, իր ուսուցչի մասին գոհունակությամբ գրում է. «Դաս չենք սովորում՝ «երեք» է նշանակում»: Այսպես էլ է հաճախ լինում. մի ուսուցիչ իր նշանակած օբյեկտիվ գնահատականի պատճառով աշակերտի մեջ դժգոհություն է առաջացնում, մեկ ուրիշն իր նվիրած, «ձրի» «երեքի» համար դառնում է սիրելի:

Մի քանի աշակերտներ առանց իրենց անունները նշելու ինձ են հանձնել հետևյալ երկտողերը.

«Ես չեմ սիրում մաթեմատիկայի ուսուցիչ ընկ. Ավանյանին նրա համար, որ նա անպատվում է երեխաներին, ծեծում», կամ՝ «Մեր պատմության ուսուցչուհին շատ վատ է վերաբերվում մեզ: Նա միշտ ամեն տեղը խփում է երեխաներին»: Երկտողերի ավելի չարացած հեղինակներ էլ կան. «Ես ատում եմ մեր մաթեմատիկայի ուսուցչին: Անպատվում է երեխաներին և շատերին փոխանակ պատժի, «երկու» է դնում մատյանում»: Հանդիպում են նաև զավեշտական երկտողեր. «Ընկեր Ստեփանյանը մեզ վերաբերվում է շատ վատ, բոլոր երեխաները բողոքում են իրենից: Դրա համար էլ ես քառորդային «չորս» ունեմ», մեկ ուրիշը՝ «Հայրենի բնության» դասատու ընկեր Ղարագոզյանը մեզ անպատվում է: Նա դասերի ժամանակ հաց է ուտում: Նա մեր պատիվը իջեցնում է: Դրա. համար էլ ես քառորդային «չորս» ունեմ հայրենի բնության դասից»: Ահա մի երկտող. «Ես չեմ սիրում պատմության ուսուցչուհուն, որը ջոկողություն է անում գնահատականը դնելուց, իմ տարեկանը փակեց «չորս», չնայած ես գերազանցիկ էի»:

Ես էլ էի իմ ցածր գնահատականների պատճառը ավելի շատ ուսուցիչներին համարում, քան դասին անպատրաստ ներկայանալը:

Ֆիզիկայի իմ ուսուցչուհին՝ ընկեր Ղուլոյանը (չեմ հիշում՝ ո՛ր դասարանում և ո՛ր քառորդում) ինձ գնահատականների մի «մարգարտաշար» նվիրեց, որ իմ հուշերի մեջ միշտ առանձնակի փայլով է ապրում, որովհետև այն «շարողը» ինձ այնքան լավ էր վերաբերվում, որ չէր կարող սուտ գնահատականներ նշանակել: Ստացել էի (այո, ստացել էի և ոչ թե «դրեց»), «երկու», հետո՝ «հինգ», հետո՝ նորից՝ «երկու», այնուհետև դարձյալ՝ «հինգ»: Ես գիտեի, որ իմ այդ «երկու»-ները «երկու»-ներ էին, «հինգ»-երը՝ «հինգ»-եր: Այսպիսի անաչառություն: Բայց կարևորն ամենևին էլ թվանշանը չէ. ուսուցիչը կարող է մեկ բալի տարբերությամբ սխալվել: Ով է ասել, որ նա պետք է անսխալական լինի: Պետք չէ շտապել «խաչ քաշել» նրա վրա և սևացնել ուրիշ աշակերտների մոտ: Անհրաժեշտ է աշխատել ուսուցչի մասին կարծիք կազմել ոչ թե նշանակված գնահատականին նայելով, այլ՝ թե նա ինչպես է այդ գնահատականը նշանակում, ինչ կերպ, ինչ հանգամանքներից ելնելով: Թե չէ՝ ամենաարդար մարդուն էլ կարող ենք մարդկայնորեն թույլատրելի սխալի պատճառով համարել անարդար, կեղծ, կողմնապահ: Իհարկե, խոսքը բացահայտ կեղծիքներին չի վերաբերվում: Թեև՝ դրանք էլ կարող են հարաբերական լինել: «Իմ մաթեմատիկայի դասատուն դասը չի կարողանում բացատրել, և երեխաները գնալով ավելի են թուլանում մաթեմատիկայից: Նա շատ անարդար է, որովհետև աշխատում է առանձին երեխաների ավելի մանրամասն բացատրել: Հատկապես բարձր է գնահատում դասատուի աղջկան: Եթե ստուգողականների մեջ երկու երեխա թույլ են տալիս, ասենք, մեկական սխալ, ապա, միևնույնն է, նա ուսուցչուհու աղջկան «5» կդնի, իսկ մյուսին՝ «չորս»: Դա ընկեր Հաջոյանն է»: Վերջին նախադասությունը գրված է մեկ այլ գրիչով: Երևի երկտողի հեղինակը մտածել, մտածել և հետո է ավելացրել ուսուցչի ազգանունը: Ըստ էության երկտողի հեղինակն ազնիվ, համարձակ մարդ է: Իր անունն էլ չի վախեցել նշել, սակայն չեմ ուզում այն հրապարակել, որովհետև, թեև անկեղծո-

րեն է գրել, գուցե ինքն էլ է սխալվում, և գուցե ընկեր Հաջոյանն էությամբ անկեղծ այս դպրոցականի սխալը շփոթի չարամտության հետ: Իսկ դու, սիրելի աշակերտ(ուհի) արդյոք մտածե՞լ ես, որ գուցե «մեկական» տարբեր սխալների համար կարող են դրվել տարբեր գնահատականներ և «մեկական» նույն սխալի համար է անթույլատրելի տարբեր գնահատականներ նշանակել: Ամեն դեպքում՝ ինձ թվում է, որ երկտողը գրված է ներքին անկեղծությամբ, և նրա հեղինակը կարող է դառնալ հոգևոր այն նեցուկներից մեկը, որի վրա հենվելով, ուսուցիչը ևս հուսադրվում է, թե չի սխալվել սեփական մասնագիտությունը (լավ բառ չէ), գործը, գործն ընտրելիս, որ գտել է իր կոչումը: Ուսուցիչներ, դուք պետք է կարողանաք գտնել այս աշակերտին (ուհուն), դուք նրան արդեն պետք է գտած լինեիք: Իսկ նա վաղուց է գտել իր ուսուցչին. «Իմ սիրած ուսուցչուհին ընկեր Հարությունյանն է, որն ինձ կենդանաբանություն է դասավանդում: Նա դասերը բացատրում է մատչելի ձևով, և մենք բոլորս, նույնիսկ ամենավատ սովորող աշակերտն էլ, դասը սովորած ենք տուն վերադառնում: Բացի այդ՝ նա երեխաների հետ վարվում է շատ սիրալիր ու ընկերաբար»:

Լինում էին պահեր, երբ ընկեր Ղուլյանը ծայրահեղ բարկության մեջ կոպտում էր մեզ, նույնիսկ վիրավորում: Բայց նրա քնքուշ և նուրբ վերաբերմունքը հազար անգամ ավելի ծայրահեղ էր, քան բարկությունը: Դասարանը երանության մեջ էր ընկնում, հազար հատ «երկու» էլ նշանակեր՝ ոչ ոք չէր նեղանա: Միշտ կոկ ու ուշադիր, նրբազգաց ու հաճելի: Վիրավորելիս էլ մի տեսակ քաղաքավարի էր. «Երիտասարդ, բարի եղեք դուրս կորչել դասարանից»: Իսկ մեր դասղեկ ընկեր Բալայանի հանդիմանանքներում հաճախ կատակ կար թաքնված. տղաներից մեկը ձեռքերը գրպաններում դրած ման գալու սովորություն ուներ: Ընկեր Բալայանը նրան մի օր հանդիմանեց և աղջիկներից թել ու ասեղ ուզեց (աղջիկներին էլ հանդիմանեց այն պատճառով, որ նրանցից ոչ մեկն իր մոտ թել ու ասեղ չուներ): Բոլորս զարմացանք: Իսկ նա, չգիտես որտեղից, գտավ իր ուզած թել ու ասեղը, բերեց և... կարեց մեր ընկերոջ գրպանների եզրերը: Հիմա մեր դասարանի Ռուզանը պատմում է, որ ընկեր Բալայանը իրենց՝ աղջիկներին միջանցքում մոտենում, կանչում էր մի քանի քայլ հեռու և առանձին զգուշացնում՝ մազերդ հավաքիր ու սանրիր, կամ՝ այս սանրվածքը քեզ այնքան էլ չի սազում, հը՞: Ում-ում, բայց նկարչության ուսուցչի խորհուրդը նման հարցերում անհրաժեշտ է հաշվի առնել: Այո, ուսուցիչը հետևում էր մեր մաքրությանն ու կոկիկությանը, և շատ տհաճ է, երբ աշակերտը ինքն է ուսուցչին տեսնում... Ինչ բառ ընտրեմ, որ վիրավորական չհնչի: Բայց դա տվյալ դեպքում այնքան էլ կարևոր չէ: Չգիտեմ՝ արժե՞ հրապարակել այս երկտողը, թե՞ ոչ: Երևի արժե. «Մեր պատմության դասատուն շատ փնթի է, անամոթաբար ծըխում է. երբ մտնում է դասարան, ծխախոտի հոտը փիս ձևով փչում է երեխաների վրա»: Ամեն մանրուք է դպրոցում կարևոր, թեև երբ ուսուցիչը նստարանների կողքով անցնելիս աշակերտի վրա (թեկուզև՝ անզգուշորեն) ծխախոտի ծուխ է փչում, ամենևին էլ մանրուք չէ: Ինչպե՞ս պետք է այս ուսուցիչն ապրի իր աշակերտների հիշողության մեջ... Ծխախոտի «փիս հոտո՞վ»: Չէ՞ որ դպրոցական կյանքն ընդամենը տասը տարի է, հետո այն պետք է ապրի հիշողության մեջ: Իսկ հիշողությունը անկարևոր մանրուքներ չի սիրում, նա մանրուքները կարևորում է:

Ինձ հանձնված երկտողերը չեն սպառվել, շատ-շատերն էլ կան, որ դեռ չեն հասել ինձ: Ուրախալի է, որ այսօրվա աշակերտները համարձակ են իրենց կարծիքներն արտահայտելիս, ազատ են խոսքի մեջ: Հասկանալի է, սերունդները փոխվում են, դրան նպաստում է նաև վերջին ժամանակներում խոսքի որոշ ազատությունն ընդհանրապես: Ուղղակի չպետք է շատ ոգևորվել այդ ազատությամբ: Ազատությունից պետք է օգտվել իմանալ: Բոլորը չէ, որ ունեն այդ ընդունակությունը: Ի՞նչ է անհրաժեշտ այդ ընդունակությունը մեր մեջ զարգացնելու համար...

Այստեղ ես կիսատ եմ թողնում մեր զըրույցը, որովհետև դժվար է միայնակ զրույց վարել: Գուցե շարունակությունը հենց դուք էլ գրեք, սիրելի դպրոցականներ, թեկուզ հենց այստեղից՝ ի՞նչ է նախ և առաջ անհրաժեշտ ազատությունից ճիշտ օգտվելու ընդունակությունը մեր մեջ զարգացնելու համար: Հը՞: Սպասում եմ ձեր երկտողերին...



# ԵՐՎԱՆԴ ՕՏՅԱՆ

(1869—1926)

**Մանկության օրերեն ի վեր միշտ անխառն հաճույքով կարդացած եմ Օտյանի բոլոր գրությունները, բայց մասնավոր կերպով տպավորած է զիս իր անմահ Փանջունին:**

**Գուցե այն պատճառով, որ անոր մեջ տեսած եմ վերջին քանի մը տասնյակ տարիներու հայ ողբերգության մեկ մանրանկարը, ավելի ճիշտը՝ այդ ողբերգության մեկ բացատրությունը:**

**Թե ինչպես կործանիչ կրնան ըլլալ նույնիսկ լավագույն սկզբունքներ և բանաձևեր, երբ անոնք կփորձվին կիրարկվիլ թերուս, իմաստակ և երազատես անպատասխանատու մարդոց կողմե, որոնք կգործեն առանց երբեք նկատի ունենալու գիրենք շրջապատող պայմանները:**

**Ահա՛ գրքին բարոյականը և դասը:**

**ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍԱՐՈՒԽԱՆ**

## Ընկեր Փանջունի

(հատված)

Ընկեր Փանջունի կրտսեր զավակն է տրապիզոնցի ընտանիքի մը ու ծնած է 1875-ին: Մայրը տղաբերքի հետևանքով մեռած է, առանց կարենալ սնուցանելու իր երեխան, զոր մեծցուցած են այծի կաթով: Ուրիշ կենսագիր մը գուցե հետևություններ հանել փորձեր այս աննշան դիպվածեն՝ Ընկեր Փանջունիի ունայնամըլտությունն ու թեթևությունը վերագրելով իր առած այդ նախնական սնունդին: Ես, ինչպես ըսի, չեմ ուզեր որևէ դատաստան ընել, այլ կբավականանամ իրողությունները արձանագրելով:

Փանջունի շատ ուշ լեզու ելած է, բայց անգամ մը խոսիլ սկսելե ետքը, ալ բերանը դյուրավ չէ գոցած: Քանի կմեծնար, այնքան կաճեր իր խոսելու կատաղությունը, այն աստիճան, որ խեղճ հայրը ըստիպվեցավ բժիշկի դիմել այդ անսովոր երևույթին դարման մը գտնելու համար: Բժիշկը քննեց տղան, լեզուն նայեցավ,

կոկորդը նայեցավ, աչքերուն նայեցավ և վճռաբար ըսավ հորը.

— Ճար ու դարման չկա, այս տղան միշտ պիտի խոսի:

— Բայց տանը մեջ ա՛լ դիմացվելիք բան չէ:

— Բամբակ թխեցեք ականջներիդ, այս է միակ միջոցը,— պատասխանեց բժիշկը:

Հակառակ իր խոսելու մարմաջին՝ փոքրիկն Փանջունի հաճախ սխալ կգործածեր բառերը, բոլորովին աղավաղելով անոնց նշանակությունը: Օր մը սեղանի մը վրա դրված արժեքավոր անոթ մը կառնե ու գետին նետելով ջարդ ու փշուր կընե:

Հայրը, իրիկունը գործեն վերադարձին, կտեսնե եղածը և տղան կանչելով ու անոթին կտորվանքները ցույց տալով կգոչե.

— Տո՛, ի՞նչ ես ըրեր անոթը:

— Շինեցի, հայրիկ,— կպատասխանե փոքրիկ Փանջունի միամիտ համոզումով մը:

— Տո, ի՞նչ շինել, կոտրեր ես, շան զավակ:

— Չէ՛, հայրիկ, շինեցի,— կպնդէ տղան,

Իզո՛ւր հայրը երկար-բարակ



ցատրե, թե երբ առարկա մը գետին նետելով կտոր-կտոր կընենք, այդ գործողությունը **շինել** բայով չի բացատրվիր՝ այլ **կոտրել**: Անկարելի եղավ բառագիտական այդ նրբությունը հասկցնել Փանջունիի, որ շարունակեց տանը մեջ գտնըված գավաթները, պնակները, շիշերը կոտրտել և ամեն անգամ որ «Ի՞նչ կընես կոր» ըսելով զինքը կհանդիմանեին, անդրդվելի ու անխռով կպատասխաներ:

— Կշինեմ կոր:

Դպրոցին մեջ Փանջունի ընկերներուն հետ վիճելով ու ճառ խոսելով ժամանակ կանցներ, իսկ դասերուն բնավ չէր հետևեր, չհավնելով կա՛մ դասատուին, կա՛մ դասագրքին, կա՛մ դասարանին և կա՛մ տետրակին ու գրչի ծայրին:

Օր մը թվաբանության խնդրի մը մասին վեճ ունեցավ իր դասընկերներեն մեկուն հետ:

— Հինգ անգամ հինգ՝ քսանհինգ կընե,— կըսեր ընկերը, որ ողջամիտ տղա մըն էր և որ հետո հարուստ վաճառական մը եղավ:

— Չէ՛,— կհամառէր Փանջունի.





անգամ հինգ՝ հիսուն կընե:

— Ո՛չ, քսանհինգ կընե:

— Հիսուն կընե:

Մյուսը տեսնելով, որ դժվար,— ինչ կըսեմ՝ անկարելի է,— խոսք հասկցնել Փանջունիի և չուզենալով անօգուտ կռիվի մը տեղի տալ, հաշտաքեր հոգիով մը պատասխանեց.

— Լա՛վ, ես թո՛ղ այնպես գիտնամ՝ թե քսանհինգ կընե, դուն ալ այնպես գիտցիր, թե՝ հիսուն կընե, ու ա՛լ չխոսինք այդ մասին ու երթանք միատեղ գնդակ խաղանք:

—Չըլլար,— պնդեց Փանջունի,—պետք է, որ նախ համոզվիս, թե հինգ անգամ հինգ հիսուն կընե:

— Այդ անկարելի է:

— Անպատճառ պետք է, որ քեզ համոզեմ,— շարունակեց մեր հերոսը, հետըզհետե բորբոքվելով:

— Երբեք չեմ կընար համոզվիլ և դուն ալ երբեք չես կրնար ապացուցանել ըսածդ,— պատասխանեց տղացու վաշխառուն:

— Երբեք չեմ կրնար համոզվիլ և դուն ալ երբեք չես կրնար ապացուցել ըսածըդ,— պատասխանեց ապագա վաշխառուն:

— Չեմ կրնար ապացուցանե՞լ, չեմ կրնար ապացուցանե՞լ,— մռնչաց Փանջունի,— ա՛ռ քեզի համոզիչ ապացույց մը:

Եվ գիտեն քար մը առնելով իջեցուց խոսակցին գլխուն:

Գլուխը վիրավորվեցավ թեթևապես, բայց տղան կրկին համոզում չգոյացուց, թե՝ հինգ անգամ հինգ կրնա հիսուն ըլլալ, և լալով գնաց բողոքել վարժապետին:

Վարժապետը իսկույն կանչեց Փանջունին և՝

— Ինչո՞ւ ընկերոջդ գլուխը պատռեցիր,— գոչեց ձայնով մը, որով Եհովա ըսած էր Կայենին, «Ո՞ւր է քու եղբայրդ»:

— Զինքը համոզելու համար,— պատասխանեց ապագա պրոպագանդիստը հանդիսավորապես:

Հայրը տեսնելով իր զավակին այս տարօրինակ ընթացքը, հաճախ ակռաները կճրտելով կպոռար.

—Փորձա՛նք պիտի ըլլաս, փորձա՛նք...

Խեղճ մարդը կսխալեր իր լավատեսության մեջ: Փանջունի փորձանք չպիտի ըլլար, այլ հեղափոխական գործ է:

Նկարները՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍԱՐՈՒԽԱՆԻ («Ընկեր Փանջունի» գրքի համար արված նկարազարդումներից)



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



### Անձրև

Մուժի մեջ կորած քաղաքում՝
Անձրևի մարգարիտ վարագույր,
Եվ հողի, ծառերի վրա
Ուշացած, ուշացած գարնան բույր...

Իր ճամփան կորցրած արև
Ու թախիծ, մի թախիծ անանուն,
Գարուններ, գարուններ իմ հոգու,
Ինչքան սեր ու հույսեր եք բերում...

●●●

Անըմբռնելի մի թեթևությամբ
Օրն է բաժանվում ինքը իրենից,
Եվ տանիքներից իջնում է դանդաղ
Մութ, բազմախորհուրդ երեկոն նորից:

Քիչ-քիչ դողդողում, իսկ հետո վարար
Լամպերն են վառվում խաչմերուկների,
Լուռ սպասում են հույսեր կիսաքրթուն,
Թե գալիք օրը ի՞նչ պիտի բերի:

Անըմբռնելի մի թեթևությամբ
Օրն է բաժանվում ինքը իրենից,
Անհասկանալի, ուրիշ բարությամբ
Քնքնով եմ լցվում նորից ու նորից:

●●●

Դաշտը... դաշտը, ինչպես աղջիկ մի ջահե
Իր վարսերը արեգակին է պահել,
Ու իր հազար-հազար ծաղիկ-ծիծաղով
Ծավալվել է ծառերի դեմ իր խաղով,
Ու խայտում է շոյող, քնքուշ հովի տակ,
Դաշտն իր համար օվկիանոս է մի անտակ
Իր բյուր-հազար նազանքներով, օրորով,
Փռվել է նա ոտքերի տակ ջերմ սիրով...
Դաշտը... դաշտը, ինչպես աղջիկ մի ջահ
Իր վարսերը արեգակին է պահել...

●●●

Մենք մեր երգերի վերնագրերը
Թողեցինք մեզնից կարոտ մնացած
Հողերին որբուկ:
Մեր ցերեկների պայծառությունը
Ու արևը տաք մեր երկինքների
Հեռվում թողեցինք:
Իսկ արցունքները, արցունքները մեր
Բերեցինք մեզ հետ հանց հարստություն,
Որը մեզանից ոչ ոք հավիտյան
Չի կարող խլել...

ՀՈՎԻԿ ԱՐԶՈՒՄԱՆՅԱ

Երևան. № 18 դպրոց, 10-րդ դա

## Հրաշք լռության մեջ

Սարսուռի ցող է գիշերը ըմպում,
Օրը թշշում է իր շիկացումից
Ու սողոսկում է լապտերների մեջ…

Քամու քնքուշ թևին
անձև թռչունի ձայնն է փշրվում,
և ճակատագրի դռների պես
ողջ իմաստության գույներն են բացվում…

Եվ հանդես է,
լույս երկնավորի աչը հենվել է
մեր երազների նուրբ ողնաշարին,
և հորիզոնի խավարի մեջ
մի բուռ արև է փոշիանում…
Շքեղ լռություն՝ իմաստությամբ լի,
երգի կարոտից ծնված խենթություն,
երազով լցված եղեգների մեջ՝
առասպել մի ջինջ, Վահագնի ծնունդ…

Խենթանում է քամին,
իսկ շարժումը լուսաբացի
թաքնված է երազների կապույտ, կապույտ
ակոսներում…

## Կապույտ առավոտ

Սահիր աչքերիս մեջ,
Որ վայելեմ մենությունը մեր երկուսի,
Որ մեկեն զգամ զորությունը ցողիդ…
Սահիր կապույտն ի վար
Ու օծվիր մայրենու կարմիր բույրով,
Սահիր քարերն ի վար,
Որ ըմպեմ դարերի քաղցրությունը,
Կաթ առ կաթ
Ըմպեմ ինչպես կապույտ հրաշք,
Ծաղկազմբեթ ինչպես, որ կախվել է
Հորիզոնի շուրթից
Ու խմում է սրբությունը
Խաչքարերի…
Սահիր իմ մեջ քո էության
Լույս ճախրանքով,
Որ կապույտից շունչը զգամ թարթիչներիս,
Ու մշուշից մեջ արթնացող օրվա
Սկիզբը տեսնեմ…
Սահիր իմ մեջ,
Կապույտ խուստումի առավոտ:

●●●

Իջավ ցողը ծաղիկ
Ծիածանով օծված,
Արբած երազով լի օրորոցի բույրով,
Ու խնկահոտ դարձավ,
Քարերի համն առած՝
Իջավ երազներից տաքացած բույրով…
Իջավ՝ արև առած
Թարթիչներից վրա,
Ու արևներ ծնեց երազներից հովտում…
Իջավ ցողը կարմիր,
Իջավ բաղեղ դարձած,
Դարձած սնձի փրփուր՝
Քամու մեջքին կպած,
Քաղցր խեժի գրկում…
Իջավ ցողը ծաղիկ՝ ծաղկեպսակ դրած,
Գառի մայուն խմեց
Ու մի խելառ ծիծաղ,
Մի առավոտ ըմպեց…
Իջավ ցողը ծաղիկ…

## Հուշ պատերազմի

Շիկացել են հիշողության սահմանները՝
Պոռթկումը վերնագրելու
Անցյալի հետքերով…
Հիշողությունը բառեր է մրմնջում,
Որ բերնեբերան լցված տակառների պես
Գլորվեն խնկածաղիկների վրայով…
Հիշողությունը բառեր է մրմնջում
Ականջներից մեջ,
Որ աչքերից մեջ տեսնեն
Հեքը աղավնիների…

ՍԵՅՐԱՆ ԿԱՐՍՅԱՆ
Երևան, № 10 դպրոց, 9-րդ դաս.

Դու տեսե՞լ ես ծաղկի բացվելու պահը: Երբևէ պատահե՞լ է, որ քո աչքի առաջ կոկոնը փթթի:

Օ՜, դա սքանչելի պահ է և այնքան հազվադեպ ու գեղեցիկ, որ կարելի է դասել հրաշքների շարքը:

Մի անգամ, զրույցի ժամանակ հենց այս մասին էր խոսքը, երբ հյուրերից մեկը ասաց.

— Ես տեսել եմ, շատ շուտ, սրանից քսան տարի առաջ:

Երիտասարդը մի պահ լռեց: Հետո թե՝ այդ մասին մինչև օրս ոչ մեկին չեմ ասել, բայց հիմա, քանի որ առիթը եկել է, կպատմեմ:

— Պատանի հասակում գյուղում հանգստանալու ժամանակ բանալին կորցրել էի: Մայրս բարկացել էր. «Որտե՞ղ էիր խաղում, շուտ գնա, փնտրի ու գտի»:

— Խոտերի մեջ էի, ինչպե՞ս գտնեմ,— ասացի ես:

— Իմ գործը չէ, դրսում չենք մնալու, բանալին գտի:

— Ես գնացի այնտեղ, որտեղ մի երկու ժամ առաջ խաղում էի: Կռացած՝ ուշադիր նայում էի, մեկ էլ հենց քթիս տակ ծաղիկը բացվեց: Այնքան անսպասելի ու տարօրինակ էր, կարծես հանկարծակի մի փոքրիկ, դեղին ճրագ վառվեց խոտերի մեջ: Մոռացած ամեն ինչ, ես նայում էի ծաղկին: Այս ի՞նչ պատահեց, ինչպե՞ս եղավ: Չգիտեմ ինչն էր ինձ գամել տեղում: Երկար ժամանակ չէի կարողանում շարժվել: Այդ ժամանակ, իհարկե, ես չգիտեի, որ դա իմ կյանքի գեղեցիկ պահերից մեկն է:

— Բանալին, իսկ ի՞նչ եղավ բանալին,— հարցրին ներկաները:

— Հա՜, մոռացա ասեմ, բանալին ընկած էր հենց այդ ծաղկի կողքին:

Ծղալտուբո նշանակում է տաք ջուր: Վրաստանի առողջարաններից մեկն է, որտեղ հանքային տաք, բուժիչ ջրեր կան և շատ հարուստ բուսականություն: Հորդառատ անձրևներ, բերրի հող, արևոտ օրեր... Մի խոսքով՝ այն ամենը, ինչ հարկավոր է ծառուծաղկին:

Մի ամառ, Ծղալտուբոյում հանգստանալու ժամանակ երես առ երես հանդիպեցի բնության անակնկալներից մեկին: Թեև տարիներ են անցել, բայց տպավորությունս այնքան ուժեղ է, կարծես դեպքը երեկ է պատահել:

Զբոսնում էի այգում, երբ հեռվից նկատեցի ծաղկաթումբը շրջապատած մարդկանց: Տեսնե՞ս ինչու են հավաքվել: Կամաց-կամաց այդ կողմը գնացի: Մարդիկ ուրախացած, ոգևորված իրար ինչ-որ բան էին ցույց տալիս՝

— Ահա՜, ահա՜, տեսեք, բացվե՜ց...

— Վա՜յ, կարծես ճապոնական անձրևանոց լինի:

Նայում եմ շրջանաձև ծաղկանոցին: Ի՞նչն է հետաքրքրություն հարուցում, սովորական ծաղիկներ են, հոտ էլ չունեն:

— Այնքան էլ սովորական չեն,— ասում է մի կին,— ուղղակի մարդու աչքի առաջ բացվում են: Նայեք այս կոկոնին:

Ուշադիր նայում եմ նիհարիկ բամիա հիշեցնող կոկոնին: Մեկ էլ՝ հոպ՝ կանաչ թաղանթը շրջվում է. երևում են իրար փաթաթված ծաղկաթերթերը: Եվս մեկ-երկու վայրկյան, և ներսում ինչ-որ ուժ է խլրտում: Դեղին-նուրբ թերթիկները ցնցվում են: Անցնում է էլի մի քիչ ժամանակ, և կարծես աներևույթ մի ձեռք սեղմում է կոճակը, անձրևանոցի նման ծաղկեպսակը միանգամից բացվում է: Ահա հենց այդ պահին է, որ մարդիկ ցնծագին բացականչում են.

— Ահա՜, ահա՜, բացվեց, նայեք, ի՜նչ գեղեցիկ է:

Շատերի մտքով է անցնում տեսնել ծաղկի բացվելու պահը, բայց քչերին է բախտ վիճակվում, որովհետև համարյա բոլոր ծաղիկները «գաղտնի» են բացվում, դանդաղ ու աննկատ: Երբ ես փոքր էի, մայրս թաղարների մեջ դափնեվարդ էր աճեցնում՝ սպիտակ և վարդագույն ծաղիկներով: Մի առավոտ մայրս ասաց.

— Ես տեսա, թե ինչպես բացվեց դափնեվարդը:

— Ինչպե՞ս,— հարցրինք մենք:

— Լույսը բացվելու վրա էր, քունս չէր տանում: Նայում էի պատուհանին: Հանկարծ մի թույլ «շունչ» լսեցի: Աչքիս առաջ սպիտակ դափնեվարդը ծաղկեց ու կապտալույսի մեջ կանթեղի պես կախված մնաց: Երանի իմ աչքերին, ասացի, այսպիսի հրաշք մեկ էլ, ի՞նչ իմանամ, աստված ինձ ե՞րբ ցույց կտա:

Ու հիմա ծաղկեթումբն օղակած մարդկանց կողքին կանգնած նայում եմ ու մըտածում բնության բազմազանության, շըքեղության, անիմանալի խորհուրդների մասին: Անիմանալի, այո, այլապես ինչո՞ւ հենց երեկոյա՜ն, աղջամուղջի՜ն (մի-

այն ու միայն ա՛յդ ժամանակ), երբ մութը իջնում, խառնվում է լույսին, երբ զովը հաղթում է տոթին և մարդիկ ու բույսերը թեթևացած շունչ են քաշում, ի-րար ետևից պայծառ-դեղին գույնով բոցա-վառվում են ծիածաղիկները՝ կարծես նրա համար, որ մարդկանց զվարթացնեն: Փոքրիկները, մատները պարզած կոկոն-ներին, զարմացած ու լայն բացված աչ-քերով որսում են այն հրաշք-պահերը, որ ծիածաղիկը ակնթարթների ընթացքում պարգևում է մարդկանց:

Մինչ այդ ես կարծում էի, թե մեղու-ները արևի մայր մտնելուն պես քնում են: Արի ու տես, որ նրանք գիտեն այս ծաղկի տեղը և «բնավորությունը»: Հե-տաքրքիրն այն է, որ մինչև ծաղկի բացվելը ոչ մի մեղու չկա ոչ ծաղիկների վրա և ոչ էլ շրջապատում:

Առաջին մեղուն հայտնվում է առաջին ծաղկի բացվելու հետ. գլխիկը մտցնում է ծաղկի մեջ ու ծծում նեկտարը, տո-տիկներով վերցնում է ծաղկափոշին:

Մեղուն ի՞նչ գիտի ծաղկելու ժամը: Պարզվում է՝ գիտի: Ապշեցուցիչն այդ չէ, սակայն: Երբ ծաղկում է կողքի կոկոնը, մեղուն դուրս է թռչում ծաղկեբաժակից և, ուղղաթիռի նման բզզալով, վայրէջք կա-տարում հարևան ծաղկի կենտրոնում: Թերևս լսո՞ւմ է ծաղկաթերթերի «շրշյու-նը»: Կես ժամվա ընթացքում, քանի դեռ ծիածաղիկը բացվում է, մեղուները բզզ-զում են ծաղկանոցում, ու գնալով նրանց թիվն ավելանում է:

Իսկ հետո՞... Ամբողջ գիշեր դեղին ծա-ղիկներն առկայծում են ճրագների նման, իսկ առավոտյան, երբ ծագում է արևը ու առաջին շողերը թափում երկրի վրա, քնքուշ ծաղկաթերթերը հավաքվում, ո-լորվում են ու անտարբեր են դառնում շրջապատի հանդեպ: Ցերեկը նրանք կախվում են ցողուններից աներգ զան-գակների նման, աստիճանաբար կուչ են գալիս, թառամում ու թափվում են հողին: Երեկոյան, երբ դարձյալ մութը իջնում, խառնվում է լույսին, երբ զովը հաղթում է տոթին, կլոր ծաղկանոցի ներսում թե դրսում կյանքն աշխուժանում է: Բնության անտեսանելի ուժը խլրտում է կոկոնի ներսում, ծիածաղիկները բացվում են ճապոնական անձրևանոցների նման, մե-ղուն բարենպաստ պահը բաց չի թող-նում իր պաշարը հավաքելու համար, իսկ մարդիկ ցնծագին բացականչում են.

— Ահա՛, ահա՛, տեսեք, բացվե՜ց...



Երևան քաղաքի հատակագծի էսքիզը

Ժողտան հատակագիծը



«Քաղվածք Հայաստանի Սոցիալիստական Խորհրդային Հանրապետության Ժողովրդա-կան Կոմիսարների Խորհրդի նիստի արձա-նագրությունից

31 մայիսի, 1923 թ.

Լսեցին.— **Ակադեմիկ Թամանյանին ծառա-յության հրավիրելու մասին:**

Որոշեցին.— **Ակադեմիկ Թամանյանին նը-շանակել Ժողկոմխորհի տնտեսական խոր-հրդակցությանը կից տեխնիկական բրագրա-յին գործերի խորհրդատու...»:**

Երբ Բիայնա երկրի հզոր տիրակալը՝ Մենուայի որդի Արգիշտին, կառուցեց Է-րեբունի բերդաքաղաքը, երևի թա-քուն հույս էր փայփայում, որ քաղաքը կմնա կանգուն ու կբարգավաճի, որ հա-զարամյակներ հետո այն կլինի շինարար-



«Նա տեսել է երևի արևային
մի քաղաք...»

# «...Որ և գեղեցկապես չենացավ պայծառ քան զառաջինն...»

ԷՄՄԱ ՀՈՎՍԵՓՅԱՆ

ների ստեղծած ամենաշքեղ քաղաքն աշխարհում: Փայփայելով այդ հույսը, նա, սակայն, չմոռացավ նաև սեպագիր արձանագրությունը. ով գիտե, գուցե և քաղաքը չմնա, ու իր հզոր անվան, իր երկրի փառքի միակ հավաստողը սալի այդ կտորը դառնա: Մոտ երկու և կես հազարամյակ անց, Թամանյանն էլ, ահա, Արգիշտիի նման նայում էր Էրեբունի—Երևանին, սակայն ոչ նրա գոհունակությամբ (դարերի ու հազարամյակների ընթացքում քանի-քանի անգամ էր ավերվել ու վերաշինվել քաղաքը, ու թեև բախտակից շատ քաղաքների նման չէր մնացել հողի ու փոշու տակ, բայց նաև այն չէր, այն քաղաքը չէր, որ իր հույսերում այնպես փայփայում էր Բիայնա երկրի հզոր տիրակալը): Նա մտովի նախագծում էր նոր քաղաքը, մտովի մայրաքաղաք էր կառուցում իր վերածնված երկրի համար: Բազում մտատանջություններ ուներ, պարզաբանման կարոտ բազում հարցեր ու հարցականներ, սակայն իր շինարար նախնիների մտավախությունը չուներ այլևս: Նա դժվարանում էր նույնիսկ հիշել, թե Հայաստանի որերորդ մայրաքաղաքն էր ինքը մտովի նախագծում, սակայն մի բան հաստատ գիտեր. այն այլևս տեղահան չի արվելու, մնալու է հաստատ ու կանգուն, ուստի պետք է կառուցվի այնպես, որ եթե չգերազանցի Արտաշատին, Դվինին, Անիին ու մյուսներին, գոնե համարվի նրանց արժանի հետնորդը:

Ու թեև հայրենիքում ապրած կյանքի վերջին 13 տարիներին Թամանյանն էր Հայաստանի յուրաքանչյուր անկյունում սկսվող շինարարական աշխատանքների անմիջական ղեկավարն ու կազմակերպիչը (իսկ այդ աշխատանքներն այնքան բազմազան էին ու այնքան ծավալուն. ճահիճների չորացում և հանրապե-

տության ոռոգման ողջ սիստեմի մշակում, հիդրոկայանների, հանգստյան տների ու առողջարանների, պետական նշանակություն ունեցող հիմնարկների նախագծում, քաղաքների, շրջկենտրոնների ու գյուղերի օրինակելի հատակագծերի ստեղծում, շինարարության ընթացիկ ու հեռանկարային ծրագրերի ու պլանների մշակում. տեղական շինանյութի բազմաթիվ տեսակների ուսումնասիրություն և օգտագործում և էլի բազմաթիվ նման հարցեր), թեև նրա՝ Հնությունների պահպանության կոմիտեի նախագահի, հայրենանվեր ու անձնուրաց աշխատանքով էին կորստից ու մոռացումից փրկվում, հավաքվում ու թանգարաններում կենտրոնացվում մեր հնության բազմաթիվ հուշարձանները («... Մենք կատարած չենք լինի մեր պարտքը ի դեմըս կուլտուրական աշխարհի և մեր ժողովրդի հետագա սերունդների, եթե չարտահայտենք մեր հոգածության ու խնամքի մաքսիմումը այդ հուշարձանների վերաբերմամբ»,— այսպես էր ասում Թամանյան արվեստագետն ու քաղաքացին), այնուամենայնիվ, նոր Երևանը, նրա հատակագծումն ու վերակառուցումն էին այն հիմնականը, որին նա տրվել էր ինքնամոռաց մի նվիրումով:

Արտակարգ նիստ՝ 1924 թ. ապրիլի 3-ի գիշերվա ժամը 1-ին, քննվող հարցը խիկայես կենսական ու հրատապ էր՝ Երևանի զարգացման հատակագծի հաստատումը՝ մի ամբողջ ազգի առջև դրըված լուրջ ու բարդ խնդիր, որ տարիներ շարունակ քիչ գիշերային ժամեր չէր խլելու ոչ միայն նախագծի հեղինակից, այլև նրան ամեն գնով օգնելու և օժանդակելու պատրաստակամությամբ լցված Հայաստանի պետական ու կուսակցական գործիչներ Սարգիս Լուկաշինից ու Ալեքսանդր Մյասնիկյանից, Սահակ Տեր-Գաբրիելյանից ու Ասքանազ Մռավյանից, Հայաստանի տարբեր վայրերից մայրաքաղաքի կառուցմանը մասնակցելու եկած հմուտ շինարարներից ու քարագործ վարպետներից: «... Ես առաջարկում եմ մի ձև, որը հեշտ իրագործելի է քաղաքի ներկա տափարակ և գեղեցիկ տեղում: Ես առաջարկում եմ մի ձև, որը Եվրոպայում շատ է ընդունված: Քաղաքը պետք է ունենա կենտրոն և մի քանի քաղաքամասեր, որոնք այնպես են դասավորված, որ շրջանակաձև փողոցների միջոցով ամենակարճ ճանապարհով իրար միացած լինեն, զանազան ուղղությամբ հեշտ լինի հաղորդակցություն պահպանել քաղաքի կենտրոնի հետ: Առողջապահական նկատառումներով քաղաքը պետք է ունենա գոտեմման կանաչ փողոցներ և այգիներ, առանց շինությունների, այսպես կոչված «քաղաքի թոքեր», որոնցով մաքուր օդ է անցնելու դեպի քաղաքի կենտրոնը...»:

Նախագծի հաստատումից երկու տարի հետո միայն, երբ ավարտվեց նաև Երևանի հիդրոկայանի շինարարությունը, Թամանյանը կարողացավ մասամբ ազատվել իր բազում պարտականություններից և նորից զբաղվել քաղաքի հատակագծով:

Դարձյալ մի քանի տարվա որոնումների ու տքնության ժամանակ էր պետք՝ քաղաքի հատակագծին վերջնական տեսք տալու համար: Նյութական ու տեխնիկական շատ արգելքներ հաղթահարելուց զատ ճարտարապետն ստիպված էր նաև պայքարել իր մտահղացումներն իրագործելու համար, համոզել, հորդորել, բացատրել... Եթե հաշվի առնենք նաև այն, որ ժամանակակիցները նրա մասին գրելիս ու նրան իբրև անհատականություն բնութագրելիս անխտիր օգտագործել են «համեստ, մեղմ ու արտակարգ զգայուն մարդ է» արտահայտությունը, պարզ կլինի, թե որքան ծանր է եղել Թամանյանի համար մայրաքաղաքի նախագիծն իրականացնելիս: Ասենք, թերևս այնքան էլ մեղավոր չէին նրանք, ովքեր չէին ընդունում Թամանյանի մտահղացումները և նրա պլաններն ու ծրագրերը համարում էին անիրագործելի, համարյա ֆանտաստիկ:

Թամանյանը մոտ 70.000 բնակիչ ունեցող քաղաքի համար հատակագիծ էր կազմում և ասում, որ նոր քաղաքը նախատեսվում էր 150.000 բնակչի համար: Շատերն առարկում էին, մեծ վեճեր ու կրքեր բորբոքում, գտնում, որ Թամանյանի մասշտաբները շատ մեծ են, Երևանի նման քաղաքի համար՝ ոչ նպատակահարմար ու անիրագործելի: Ինչ իմանային, որ մտքի անսահման թռիչքով ու արվեստագետի մեծ օժտվածությամբ նա ավելի մեծ երազներ էր փայփայում, մըտովի տեսնում «արևային մի քաղաք» և նրա ուղեղում, «փողփողում են սիրտ պայթելու չափ պայծառ-սյունաշարքեր, տերրասներ, աստիճաններ մարմարե, և պարտեզներ ոսկեզօծ, շատրվաններ եր-

գաձայն»:

Թամանյանը նախագծեց Երևանը՝ ներդնելով իր ողջ տաղանդն ու կարողությունը, ստեղծագործաբար՝ օգտվելով հայրենի և եվրոպական շինարարական արվեստի փորձից, նա սերունդների համար թողեց կատարյալ և օրինակելի այնպիսի մի աշխատանք: Նրան հաջորդած բոլոր անվանի ու տաղանդավոր ճարտարապետները, անգամ միլիոնանոց Երևանի հատակագիծը մշակելիս դարձյալ ելակետ են ընդունել քաղաքի առաջին հատակագիծը, որովհետև այն քաղաքն ընդարձակելու, ծավալելու մեծ հնարավորություններ է տվել նրանց:

Թամանյանը ոչ միայն կազմեց մայրաքաղաքի նոր հատակագիծը, այլև սկսեց իրականացնել այն: Շուտով քաղաքի կարևոր հանգույցներում (Լենինի անվան հրապարակ, ուսանողական թաղամաս, Թատերական հրապարակ), սկսեցին վեր բարձրանալ նրա գեղեցիկ կառույցները: Ընդհանրապես, Թամանյանը՝ հենց ինքն էլ դառնում էր իր նախագծով կառուցվող շենքերի շինարարության գլխավոր կազմակերպիչը: Օրվա մեծ մասն անց էր կացնում շինարարների հետ, ցուցումներ, խորհուրդներ տալիս: Իսկ ամենից շատ նրան տեսնում էին Կառավարական տան և Ժողտան (օպերայի և բալետի թատրոնի շենք) շինհրապարակներում: Մեծածավալ ու մոնումենտալ այս շենքերը նրա տաղանդի ու վարպետության իսկական մարմնացումները դարձան: «Հայ ժողովուրդը պիտի ունենա իր ազգային թատրոնը, որտեղ հնարավոր կլինի կազմակերպել մասսայական ներկայացումներ ու մեծ տոնախմբություններ: Այն պիտի լինի ոչ թե թատերական շենք՝ լոկ տրադիցիոն առումով, այլ նոր տիպի հասարակական-մասսայական մի շինություն»: Այսպես էր խորհում հանճարեղ շինարարը ժողտունը նախագծելիս: Նախագծի ավարտից մի քանի տարի անց (1930 թ.) սկսվեցին նաև շինարարական աշխատանքները: Իր բոլոր շինությունների մեջ Թամանյանը մեծ վարպետությամբ օգտագործում էր հայկական բնական շինանյութերի համարյա բոլոր տեսակները:

Ստեղծելով իր նախօրինակը չունեցող ինքնատիպ, մեծածավալ մի կառույց, Թամանյանն իր նոր խոսքն ասաց հայ ճարտարապետության մեջ: Եվ պատահական չէր, որ ժողտան մանրակերտը 1937 թվականին Փարիզի համաշխարհային ցուցահանդեսում արժանացավ Ոսկե մեծ մեդալի:

Իր այն համոզմունքը, որ հայ պետականությունը ներկայացնող շինությունը պետք է լինի խիստ, բայց և վեհաշուք, պարզ և միաժամանակ սքանչելի, գեղագետի նուրբ ճաշակով Թամանյանը իրագործեց Կառավարական տունը կառուցելիս:

Կառավարական տունն ստեղծվեց մեծ վարպետությամբ, լույսի ու ստվերի զարմանալի համադրությամբ: Լենինի հրապարակի ճարտարապետական անսամբլի մեջ այն ելակետ դարձավ. մյուս կառույցները բոլորն էլ նախագծվեցին այնպես, որ նրա հետ գեղեցիկ ամբողջություն կազմեն:

Իր կարճատև կյանքի վերջին 13 տարիները Ալեքսանդր Թամանյանը նվիրեց Երևանին և կենդանության օրոք իրականացած տեսավ իր բազմաթիվ մտահղացումների մի աննշան մասը միայն, նա այդպես էլ չտեսավ նոր Երևանը...

Արգիշտին կառուցեց իր քաղաքն ու հիացավ նրա տեսքով՝ վկա սեպագիր արձանագրությունը, որ դարերի համար պահեց քաղաքի պատմությունն ու փառքը:

Տրդատ ճարտարապետը վերականգնեց Այա-Սոֆիայի կործանված գմբեթը, և Ասողիկը դարձյալ դարերի համար հիացմունքով արձանագրեց. «...որ և գեղեցկապես շինեցաւ պայծառ, քան զառաջինն...»:

Թամանյանը չտեսավ նոր Երևանը: Ժամանակակիցները պատմում են, որ երբ հանգուցյալ ճարտարապետի դագաղը բերին ու դրին ժողտան շինհրապարակում, պատը դեռ մի մարդահասակ էլ չկար: Պատմում են նաև, որ ճարտարապետը մի գեղեցիկ սովորություն ուներ. անավարտ շենքի պատի մեջ տեղադրում էր ամուր զմռսված պղնձե պարկուճներ, որոնք տեղեկություններ էին պարունակում ժամանակաշրջանի ու կառույցի պատմության մասին: Հնարավոր է նաև, որ այդ պարկուճները պահում են և ճարտարապետի անունը...

Ինչպես էլ լինի, նրա մտահղացումներով կյանքի կոչված քաղաքը, որ իսկապես հիասքանչ ու գեղեցկատես է «քան զառաջինն», մի յուրօրինակ հուշարձան է դարձել հանճարեղ ճարտարապետի հիշատակին և դարերին ու սերունդներին է տանելու նրա պայծառ անունը:

## ՍՊԱՐՏԱԿ ՂԱՐԱԲԱՂՑՅԱՆ

●●●

Հիշողությունը մեր ներսում հաճախ
Ասփալտների տակ
Տնքացող հողի նման նվում է
Անանուն ցավից․
Այս ո՞ւմ խելքին է
Փչել
Արդուկել
ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆԸ…

●●●

Ամոան շոգն է
Ողկույզների հատիկներում հալվել արդեն։
Մորս պես սուրբ, փոքրամարմին
Իմ Հայաստան․
Այդպես դու ես իմ մեջ
Հալվել,
   Տարրալուծվել,
Ու քեզնով եմ ես քաղցրացել…

●●●

Այդ շներն են լուսնի վրա հիմա հաչում․
(Այս էլ քանի հազար տարի…)
Խավարի մեջ մի պուտ լույսի հետ էլ անգամ
Շուն կոչվածը դեռ չի հաշտվում։
Փառք քեզ, աստված,
Ոչ մի հաչոց լույս չի մարել։





**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# Հայերի հաղթանակը: Հռոմի պարտությունը և Մեծ Հայքի առաջին բաժանումը

Պարսից Սասանյան թագավորական տունն իրեն հայտարարեց Աքեմենյանների ժառանգորդ և նպատակադրեց վերականգնել Աքեմենյան կայսրությունը՝ Հնդկաստանից մինչև Բալկանյան թերակղզի: Պարզ է, որ իրենց այդ նպատակը իրականացնելու ճանապարհին Սասանյան Պարսկաստանը երկու լուրջ ախոյան ուներ՝ Հռոմը և Հայաստանը:

Երբ Սասանյան Արտաշիրը պատերազմ հայտարարեց պարթևների թագավոր Արտավան V-ին, հայերը շտապեցին օգնելու իրենց թագավորական տան ազգակից պարթև Արշակունի արքային: Բայց ուշացան: 227 թ. գարնանը, մինչև հայերն օգնության կհասնեին, Որմիզդավանի ճակատամարտում Արտաշիրի զորքերը հաղթեցին պարթևներին և սպանեցին նրանց վերջին թագավոր Արտավան V-ին: Միջագետքում Տիզբոն քաղաքը դարձավ Սասանյանների մայրաքաղաք:

Խառը իրավիճակում հայերը կարծես ճիշտ կողմնորոշվեցին: Հայոց թագավոր Տրդատ II-ը, որ ուներ Խոսրով մականունը (պարսկերեն նշանակում է հռչակավոր), Սասանյաններին հակառակորդ ուժերը ի մի էր հավաքում՝ Արտաշիրին տապալելու և Իրանում պարթև Արշակունիների թագավորությունը վերականգնելու համար:

Նա դաշնակցեց քուշանների պետության հետ: Քուշանների երկիրը գտնվում էր Պարսկաստանից դեպի արևելք (մոտավորապես այժմյան Փենջաբ նահանգի տեղում): Այնտեղ շարունակում էր իշխել Արշակունի թագավորական տոհմի մի ճյուղը: Տրդատ-Խոսրովը իր շուրջը համախմբեց նաև մի շարք պարթև իշխանների: Կարևոր է իմանալ, որ Արտաշիրի հաղթանակից հետո պարթև Արշակունիների և իշխանների մի մասը ապաստանել էր Հայքում:

Ապա Տրդատ-Խոսրովն իր կողմը գրավեց նաև Վրաստանը, Աղվանքը, Մարաստանը, որոնք հայերին օգնական զորք տվեցին:

Պարթև Արտավան V-ի որդի Արտավազդը և նրա եղբայրները ամրացել էին Մեծ Հայքին հարավ-արևելքից սահմանակից Ատրպատականում: Այդ Արտավազդն իրեն թագավոր էր համարում և իր մայրաքաղաքն էր դարձրել Մարաստանի Եկբատան քաղաքը:

Արտաշիր Սասանյանն իրեն ապահով չէր զգում, քանի դեռ կենդանի էին վերջին պարթև Արշակունի թագավորի ժառանգները: Նրանք կարող էին խլել իրենից պարսից գահը: Նա իր զորքերով մտավ Ատրպատական, որպեսզի ոչնչացնի պարթև Արշակունիների վերջին ժառանգներին: Հայոց Տրդատ-Խոսրով թագավորը իր դաշնակից զորքերով հարձակվեց Արտաշիրի վրա, ջախջախեց նրա զորքերը, ինքն՝ Արտաշիրը փախչելով գլուխն ազատեց:

Ապա Արտաշիրի և Տրդատ-Խոսրովի զորքերի միջև տեղի ունեցան նաև այլ ճակատամարտեր՝ շուրջ 11 տարի, և միշտ հաղթում էին հայերը: Խոսրով-Տրդատն արշավեց նաև Միջագետք, գր-

րավեց պարսից մայրաքաղաք Տիզբոնը, ավերածություններ գործեց:
Մեծ Հայքի թագավորության այս ժամանակաշրջանի մասին գրել են հայ պատմիչներ Ագաթանգեղոսը, Մովսես Խորենացին, հռոմեացի պատմիչ Դիոնի Կասիոսը և ուրիշներ: Խորենացին Տրդատ-Խոսրովին անվանում է Խոսրով Մեծ: Պատճառը նախ այն է, որ հայոց այս թագավորը մի շարք փայլուն հաղթանակներ է տարել պարսից Սասանյան զորքերի դեմ: Ապա Տրդատ-Խոսրովը շրջակա երկրներում իշխող Արշակունի թագավորների մեջ գլխավորն էր ու ամենահզորը, նաև նրանց միավորողն ընդդեմ Սասանյանների:
Բայց Արտաշիրն ի վերջո կարողացավ իր ձեռքը գցել Արտավազդ Արշակունուն և տանելով Տիզբոն, գլխատեց: Իսկ Տրդատ-Խոսրով Մեծը գրավեց Մարաստանը, որի մայրաքաղաք Եկբատանում կուսակալ նշանակեց Երախնավոր Անձևացի հայոց նախարարին: Այդպես Մարաստանն Ատրպատականով միաժամանակ կցված էր Մեծ Հայքին:
Բայց Արտաշիրը հսկայական քանակությամբ զորքեր էր հավաքում, և Տրդատ-Խոսրով Մեծը ճիշտ համարեց իր զորքերը հետ քաշել Մարաստանից: Միաժամանակ հայոց թագավորը բանակցություններ էր վարում հռոմեացիների հետ: Նա զգում էր, որ ստեղծված պայմաններում Հայքի նախկին դաշնակից Պարթևստանի փոխարեն նույն տեղում հզորանում էր թշնամի Սասանյան Պարսկաստանը: Իսկ դա թելադրում էր հայոց հեռատես թագավորին դաշինք կնքել Հայքի նախկին թշնամի Հռոմի հետ:
Հայոց պատմության մեջ խելացի թագավորներն ունեցել են հետևյալ սկզբունքը՝ «Հայաստանը չունի մշտական բարեկամներ ու մշտական թշնամիներ, նայած ստեղծվող իրադրությանը՝ Հայքը կարող է դաշնակցել յուրաքանչյուրի հետ, ով կօգնի նրան պահպանելու իր անկախությունը»:
Տրդատ-Խոսրովն իր գահակալության սկզբի տարիներին այս սկզբունքով էր առաջնորդվում, այդպես նա դաշինք կապեց Հռոմի հետ: Բայց հետո, երբ Հայքի օգտի համար պետք էր մտերմանալ հզորացած Սասանյան Պարսկաստանի հետ, Տրդատ-Խոսրովը մնաց հավատարիմ Հռոմին, քանի որ նրա մեջ հաղթեց Արշակունիների ատելությունը Սասանյանների նկատմամբ:
Օգտվելով այն բանից, որ Հռոմը 230-ական թվականներին Արևմուտքում զբաղված էր գերմանացիների դեմ պատերազմելով, Արտաշիր Սասանյանը Միջագետքում մեծ զորքով հարձակվեց Հռոմի լեգեոնների վրա: Եվ հաղթանակ հաղթանակի հետևից տանելով, հասավ մինչև Միջերկրական ծովի ափերը: Նույն ժամանակ Արտաշիրի զորքերը փորձեցին մտնել Հայաստան, բայց գլխովին ջախջախվելով փախան:
Ապա՝ Հռոմի կայսր Ալեքսանդր Սևերոսն իր զորքով անցավ հակահարձակման՝ պարսիկների դեմ: Հայկական զորքերը, ըստ իրենց դաշինքի, նույնպես հարձակման անցան Սասանյան պարսիկների դեմ և կրկին գրավեցին Մարաստանը:
Պարսից Սասանյանների զորաբանակները ջախջախված էին: Պարսից զորավարները երկար ժամանակ չէին համարձակվում հարձակվել Հայքի վրա:
Հայքը Հռոմին, որպես իր դաշնակցի, ընտիր աղեղնաձիգ զորք տվեց: Հռոմեացիները այդ ժամանակ ծանր պատերազմ էին մղում գերմանացիների դեմ: Հայոց աղեղնաձիգ զորամասերը Եվրոպայում մեծապես օգնեցին հռոմեացիներին:
Պարսկա-հռոմեական պատերազմները վերսկսվեցին 241 թվականին: Սկզբից հաղթանակում էին հռոմեացիները, բայց Արտաշիրի որդի Շապուհ I-ը, որ ռազմատենչ և հմուտ զորավար էր, 244 թ. փետրվարի 11-ին ճակատամարտ տվեց հռոմեացիների դեմ և հաղթեց: Հռոմի Գորդիանոս կայսրը սպանվեց:
Հռոմին օգնում էին նաև հայկական զորքերը, և այս պարտությունը ճակատագրական եղավ հայերի համար: Պարտված Հռոմը համաձայնեց Մեծ Հայքը ազդեցության երկու ոլորտի բաժանել. արևելյան մասը Պարսկաստանի, արևմտյանը Հռոմի գերիշխանության տակ պետք է գտնվեր: Բայց այս ծրագիրն անմիջապես իրականացնել անհնար էր, քանի որ Հայաստանն ուներ հզոր բանակ և կարող էր դիմադրել Սասանյան Պարսկաստանին: Սակայն, ի վերջո, այդ չարագուշակ բաժանումն իրականացավ:
Շապուհ I-ը Պարսկաստանի արևելքում պատերազմում էր քուշանների դեմ: Տրդատ-Խոսրով Մեծը օգնության հասնելով դաշնակից քուշաններին՝ Պարսկաստանին հարվածեց արևմուտքից: Հայկական

զորքերը հաղթանակ հաղթանակի հետևից էին տանում և Շապուհ I-ի զորաբանակները քշեցին մինչև Հնդկաստանի կողմերը: Բայց քուշանների զորքը պարտվեց: Շապուհը սպանեց Արշակունի տոհմի քուշանների ճյուղի բոլոր ներկայացուցիչներին: Փրկվեց միայն մի մանուկ՝ Պերոզամատն, որին փախցրին Հայաստան: Նա դարձավ հայոց Կամսարական նախարարական տան հիմնադիրը:

Օգտվելով այն բանից, որ Հռոմը հրաժարվում էր օգնել Հայաստանին՝ Շապուհ Առաջինը հսկայական զորք հավաքած 252 թ. հարձակվեց Հայքի վրա և գրավեց երկրի մի մասը: Շապուհը շարժվելով դեպի արևմուտք՝ հասավ մինչև Կիլիկիա և Կապադովկիա:

Այդ ժամանակ հայ նախարարները երկու կուսակցության էին բաժանվել. մի կուսակցությունը կողմնակից էր վերականգնել դաշինքը արևելյան հարևանի՝ իրանցիների հետ, հաշվի չառնել, որ այնտեղ իշխանությունը Սասանյաններին է անցել, մյուս կուսակցությունը պաշտպանում էր արևմտյան կողմնորոշումը՝ հավատարմությունը Հռոմին: Այս երկրորդ կուսակցության ղեկավարն էր Տրր-դատ-Խոսրով Մեծը՝ Սասանյանների անհաշտ հակառակորդը:

Երբ Սասանյանների պարսից զորքերը մտան Հայք, հավանաբար, նրանց հետ էին նաև արևելյան կողմնորոշում ունեցող հայ նախարարների զորամասերը: Հայոց թագավորը յուրայիններով փախավ Մեծ Հայքի արևմտյան կողմերում գտնվող Եկեղյաց գավառը և հաստատվեց հինավուրց հայկական Զրմես քաղաքում: Իսկ պարսիկների նվաճած Հայքի մասում 253 թ. թագավոր հռչակվեց Արտավազդ V Արշակունին, որ արևելյան կողմնորոշում ուներ: 256 թ. Տրդատ-Խոսրով Մեծը դավադրաբար սպանվեց:

Այդպես 252—253 թվականներին իրականացավ դեռևս 244 թ. Հայաստանը երկու մասի բաժանելու վերաբերյալ Հռոմի և Պարսկաստանի միջև կնքված պայմանագիրը: Բայց հայերի բաժանումը միայն տարածքային չէր, այլ կար նաև հայերի քաղաքական կողմնորոշման բաժանում: Հայաստանում գնալով ուժեղանում էր արևելյան և արևմտյան կողմնորոշում ունեցող հակադիր կուսակցությունների պայքարը, որն ավելի էր սաստկանալու Հայաստանում քրիստոնեությունն իբրև պաշտոնական կրոն ընդունելուց հետո:

## ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

●●●

Գնում եմ ահա, ես գնում եմ գյուղ,
Խոտերը ճամփիս ելնում են ոտի,
Եվ արտույտների թևերից փափուկ
Կապույտն է կաթում պարզ առավոտի:

Խղճմտանքի պես և գութի պես տաք
Գառան մայուն է փռվում ձորերին,
Կանգնել է ճամփիս մի փոքրիկ տղա,
Որին տեսել եմ մանկութ օրերին:

Նայում է թաքուն, նայում ինձ էլի,
Ու փոքրիկ ժպիտ ու փոքրիկ բարև,
Արեգակներ են աչքերը կարծես,
Ճառագայթում են նարինջ ու արև:

Գառների թողած ոտնահետքերին
Ցոլում է շաղը՝ աստղային գութով,
Ես մեռոնի տեղ խմում եմ ահա
Եվ գառնիկ ախպեր կդառնամ շուտով:

Ամեն ինչ խաղաղ, ամեն ինչ անհոգ,
Ելնում են մեկ-մեկ խոտերը ոտի,
Եվ կարոտներիս թևերից փափուկ
Սաղմոսն է կաթում պարզ առավոտի:

●●●

Այցի եմ եկել Կարմիր բլուրին.
Դեղին պատերին հին նկարներ կան.
Ահա արքան մեր պղնձամորուս՝
Դարերի կնիքն ու խոհը վրան:

Նստած է կառքում, և ոտքերի տակ
Ցոլարձակում է լուսանի մորթին,
Եվ տեգազրահ մի քաջ դրանիկ
Աղեղ է տալիս իր առաջնորդին:

Կանգնել ակնապիշ, նայում եմ ես էլ,
Բազուկն է արյան ավյունով կոփած,
Տեր իմ, որտե՞ղ եմ ես նրան տեսել,
Ուտյաց աշխարհո՞ւմ, թե՞ հողում Ծոփաց:

Ելնում է ահա, լուսայգ է ու ծեգ,
Զորքն է աղեղվում՝ պատրաստ բարևի,
Բրոնզից պինդ է սաղավարտը շեկ,
Եվ վահանն ասես շեղբ է արևի:

Մեր արմենների ցեղից է, գիտեմ,
Սակր ու նիզակով գնում է կռվի,
Ալանաց հողում, հողում քուշանաց,
Նրա համբավը դեռ պիտի փռվի:

Այցի եմ եկել Կարմիր բլուրին.
Դեղին պատերին հին նկարներ կան,
Ահա արքան մեր պղնձամորուս՝
Դարերի կնիքն ու խոհը վրան:



ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# Տայգայի գիշերների արքան

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Նստած էր կոճղի վրա բրդոտ, ճերմակ մի կենդանի և անթարթ աչքերով նայում էր ինձ: Ես նրան չճանաչեցի, բայց սառած, անշարժ աչքերը ինչ-որ բան հիշեցրին ինձ, հեռավոր, արդեն մոռացված մի բան: Այդպիսի աչքեր ես տեսել էի մանկության տարիներին. Գյուղի տատի աչքերն էին դրանք, որոնք գիշերները լույս էին տալիս, և մեր մանկական հոգիները սառչում էին նրա աչքերի փայլից:

— Գյուղի տատի աչքերը գայլի աչքեր են, նա կեսգիշերներին գայլի մորթի է հագնում ու դուրս է գալիս որսի,— վախեցնում էին մեզ, և մենք մութն ընկնելուն պես այլևս տնից դուրս չէինք գալիս:

Կենդանին անշարժ նստած նայում էր ինձ, աչքերը չէր թարթում, և կեռ կտուցի աղվամազի բարձիկի տակ պարզ ըզգացվում էր նրա սրտի անհանգիստ բաբախյունը: Մոտեցա և ճանաչեցի բևեռային ճերմակ բուին: Նա ընկել էր եղջերուի մազերից հյուսած թակարդը: «Սիրտը բերանն է եկել»,—մտածեցի, պպզեցի կողքին, քանդեցի թակարդի կապերը՝ ազատեցի: Բավականին մեծ բու էր, գը-

ցեցի ուսիցս կախած որսորդական ցանցի մեջ: Բուն հանգիստ էր, ոչ դիմադրեց և ոչ էլ ձայն հանեց: Նրա տեսքից երևում էր, որ արդեն մի քանի օր է, ինչ թակարդն է ընկել, իհարկե, քաղցած, ծարաված և ահը սրտին:

Մի քանի օր էր ինձ մոտ էր, իմ փոքրիկ խրճիթում, որտեղ նրա թևերը չէին բացվում: Ես նրա համար ուտելիք էի բերում՝ բռնոնդուկներ, սուսլիկներ և դաշտային մկներ, ջուր էի տալիս, թողնում տանը, ինքս՝ հեռանում: Վերադառնում, տեսնում էի նրա կույր հայացքը, լարված ականջները և աղվամազի փնջի տակ անվերջ դողացող սիրտը: Ես շատ էի լսել նրա կռինչը գիշերվա խավարում, սարսուռ զգացել նրա չարագուշակ ձայնից ու պատկերացրել, թե ինչպես է նա հարձակվում իր զոհի վրա և ինչպիսի կատաղությամբ ու դաժանությամբ է բզկտում անօգնական կաքավին կամ դեռ տարին չբոլորած նապաստակին: Տայգայի ահավոր լռության մեջ նրա կռինչը նման էր տագնապ ազդարարող շեփորի ձայնին: Թուլանում էին բադերի թևերը, սուսլիկները ժամերով դուրս չէին գալիս իրենց բներից, մկները մտնում էին ձյան տակ և դողում մինչև լուսաբաց: Բևեռային գիշերների արքան անհաջող որսից բարկացած՝ կռնչում էր ծանր ու երկարատև, ողբալի ձայնով, և այդ ձայնի սոսկումին չդիմացող նապաստակները փախչում էին, որպեսզի հեռանան չարագուշակ այդ վայրից: Եթե բուն նկատում էր, խեղճ նապաստակն այլևս նրանից փախչել չէր կարողանում, սարսափից թուլացած ոտքերը մի կերպ քարշ էր տալիս ձյան վրայով մինչև այն պահը, երբ գիշատիչը աղմուկով նետվում էր նրա վրա, մագիլները խրում մկանների մեջ, պատռում էր կուրծքը, փնտրում էր զոհի սիրտը, հանում և ագահությամբ կուլ տալիս: Ինձ համար հեշտ չէր նրա հետ, իհարկե, չէի հասկանում, թե ինչի համար էի նրան պահում: Մի օր էլ, երբ ես նրանով զբաղվել չէի կարողանում և, համոզվեցի, որ այլևս չի կորչի տայգայում, որոշեցի բաց թողնել: Գիրկս առա, փորձեց մագիլները խրել բազկիս մեջ: Ես խիստ բարկացա, դուրս տարա խրճիթից ու դրեցի տնակիս մոտ ընկած ծառի բնի վրա: Նա երկար ժամանակ այդպես նստած մնաց և միայն իրիկնամուտին իջավ ծառի բնից, գնաց թփուտները և այլևս չվերադարձավ: Ես նրան երբեք չտեսա, երբեմն միայն լսում էի նրա կռինչը, և ինձ թվում էր, թե նա ապրում է ինձանից ոչ հեռու, տնակիս մոտակայքում: Ես ապրում էի այդ պատրանքով, և կարծես հաճելի էր ինձ համար նրա հարևանությունը: Պատահում էր, որ գիշերները որսի ժամանակ սուսլիկ կամ բռնոնդուկ էր բռնում, և այնպես էին լալիս ու սվսվում զոհերը, որ նրանց լացն արթնացնում էր ինձ, և ես բարկությամբ էի լցվում, ուզում էի գտնել ու պատժել նրան: Բուերն ամենամեծ գիշատիչ թռչուններն էին արևելքի և հյուսիսի տայգաների և տունդրաների սահմանագծերում: Այնտեղ ես արծիվներ չեմ տեսել, միայն մեկ անգամ՝ Մորժոտ լեռան ժայռերի վրա: Թե ինչպես էր հայտնվել նա այդ շրջաններում՝ այդպես էլ չիմացա.

— Աղետները,— ասում էր իմ բախտակից բարեկամը,— միայն աղետները կարող էին նրան բերել, հասցնել այս տեղերը, բայց ի՞նչը կարող է օգնել նրան, որ հետ գնա՝ չեմ հասկանում:

Երկար, շատ երկար տարիներ գոնե մեկ անգամ թռչունի երգ չլսեցի, այնտեղ թռչունները չէին երգում, ծաղիկները հոտ չունեին, կարապների որսն արգելում էր տայգայի ամենախիստ, դաժան չգրված օրենքը. կարապին սպանողը պատժվում էր մահով: Նրանք իջնում էին մեծ, խոր լճակների վրա, հանգստանում ավազոտ ափերին և, բնական է, չէին վախենում թշնամիներից, բայց զգուշանում էին:

— Ինչո՞ւ են զգուշանում,— հարցրեցի մի անգամ Օռոճ որսորդին:

— Որովհետև դրանք չվող թռչուններ են, գալիս են ուրիշ երկրներից, ձու են ածում, ճտեր հանում և նորից վերադառնում իրենց տաք երկիրները: Ես չգիտեմ՝ այնտեղ, իրենց երկրներում ինչպե՞ս են վարվում նրանց հետ մարդիկ, գուցե սպանում են, և այդ վախն է մնացել նրանց սրտերում, և նրանք չպաշտպանվել չեն կարող: Նրանք չգիտեն, որ մենք պաշտում ենք իրենց: Ուշ գալիս՝ շուտ հեռանում, գնում են, ժամանակ չունեն մեզ ճանաչելու, չեն հասցնում: Այդպես է:

— Բուն հարձակվո՞ւմ է կարապի վրա,— հարցրեցի ես նրան: Նա վախեցավ իմ այդ հարցից, անմիջապես չպատասխանեց, բայց հետո, մի տեսակ վախը սրտում շշնջաց.

— Պատահում է, Յան, պատահում է:

— Դու տեսած կա՞ս:

— Այո, տեսել եմ մեկ անգամ: Կարմիր գետակի վրա տեսա. բուն գնդակի նման նետվեց իր զոհի վրա, զոհը կարապն էր, որը շատ ավելի մեծ էր և ծանր: Բուն քրքրեց նրան, կարապի այն ժամանակն էր, երբ փոխում է փետուրները՝ մեծ փետուրներն ընկել էին արդեն, և նա թռչել չէր կարողանում, առանց այդ էլ թուլացած կարապի վրա էլ ուժ չէր մնացել: Բուն այնպիսի արագությամբ ու կատաղությամբ պատռեց կարապի կուրծքը, որ արյունը վտակի նման հոսեց կարապի կրծքից: Ես տեսա, և իմ ձեռքը, բնականաբար, բարձրացրեց հրացանս. կրակեցի, գնդակս կպավ բուի մեջքին, և նա տապալվեց, ընկավ արդեն մեռած կարապի կողքին:

Չէի սիրում նաև բևեռային գայլերին, աղվեսներին, որոնք իրենց զոհին ուտելիս լափում էին, հարձակվելիս մոլեգնում ու կատաղում էին այնպես, կարծես զոհը կարող էր դիմադրել: Բուի ձայնը, չարագուշակ կոչինչը բավական էր, որ ամենաքաջ մարդու սիրտն անգամ կծկըվեր վախից: Լուռ, խուլ, անկյանք տայգայում այդ կոչինչն ահավոր էր, հզոր և սարսափելի:

Եվ ահա մի գիշեր ինձ քնից արթնացրեց տնակիս մոտ բարձրացած աղմուկը: Այդ նման էր կատաղած շների գզվռտոցին, կարծեք գզում, քրքրում էին իրար կատաղած լայկաները: Հագնվեցի, մի դույլ ջուր վերցրեցի հետս, դուռը բացեցի և առանց երկար մտածելու դույլով ջուրը շփեցի կռվողների վրա: Ջուրն օդի մեջ սառեց և սառցե կտորներով թափվեց կռվողների վրա: Մի կողմ նետվեցին, և երբ ես փորձեցի մի բան տեսնել, հասկանալ, ճերմակ մի գունդ դիպավ դեմքիս և ուսիս վրայով անցավ: Ես, իհարկե, բնականաբար հետ գնացի, ներս մտա և տանս դուռը փակեցի: Վառարանիս դռնակից տանս հատակին ընկած աղոտ լույսը լուսավորեց արնաթաթախ ճերմակ թռչունին. եթե կարելի է այդպես ասել՝ դա իմ Բուն էր: Ես նրան գիրկըս առա, կտուցի վրա արյան կաթիլ կար: Առավոտյան, երբ հանում էի նրան խրճիթիցս, մի քանի քայլ ինձանից հեռու տեսա աղվեսի քրքրված և արդեն սառցակտոր դարձած մարմինը: Կատաղի կռվի մեջ պարտվել էին երկուսն էլ: Նրանց անզուսպ կրքերը խաղաղեցրել էր տայգայի սառնամանիքը՝ տերն ու տնօրենը հեռու հյուսիսի:

# ՓՈԹՈՐԻԿ ԳՈՐԳԻ ՎՐԱ

ՍԻՄՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ

Լուսանկարը՝
ԱՐՄԵՆ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆԻ



Նեղսրտում եմ: Ոչինչ չի ստացվում: Նյութն այնքան հարազատ է ու մարսված, իսկ սկիզբը այդպես էլ չեմ գտնում: Ներս ու դուրս եմ անում, հանգստացնում ինձ, իսկ նա՝ իմ ակնարկի հերոսը, խանգարում է... իր հարուստ կենսագրությամբ ու պարզ կեցվածքով:

Բենուր: Այս անվանը սազող միակ ազգանունը՝ Փաշայան: Փորձեք ուրիշ ազգանուն կպցնել՝ չի ստացվի: Որովհետև այս անունը այս ազգանվան հետ մեզ շատ հույզեր է պարգևել, դարձել է մի տեսակ հաղթանակի խորհրդանիշ: Այս



ամենը եւ մտածում եմ 86-ին՝ «Դինամո» մարզադահլիճում, որտեղ վերջապես «բռնեցրի» նրան: ՍՍՀՄ հավաքականը նախապատրաստվում էր Իվան Պոդդուբնու միջազգային մրցաշարին: Բենուրին հետևում էի որպես ապագա գրքիս հերոսի, նշումներ անում:

Հենց առաջին օրը, չգիտես ինչու, ինձ թվաց, թե նա մի տեսակ անտրամադիր է մարզվում: Ամեն ինչ անում էր գեղեցիկ ու արժանավայել, բայց ինչ-որ բան պակասում էր, որ հետո պիտի գտնեի՝ ներշնչանքը: Հետո պիտի իմանայի նաև, որ նա՝ ներքուստ արդեն հրաժեշտ է տըվել իր փոթորկահույզ մարզական կյանքին, բայց չի կարողանում կտրել ըմբշամարտին կապող վերջին թելերը: Նա իր մարզընկերոջը գերազանցում էր թե՛ արագությամբ ու հնարքների բազմազանությամբ, թե՛ ֆիզիկական ուժով, իսկ մարզընկերը ՍՍՀՄ հավաքականի թեկնածու էր:

Նորեկները ընդգծված հարգանքով էին վերաբերվում Բենուրին, իսկ «հնաբնակները» նրա կողքից անցնելիս անպայման սիրաշահող ժեստ էին անում, քնքշորեն (որքան կարող է քնքույշ լինել ըմբիշը) գրկում իրանը կամ նույն քնքշությամբ գը-

ցում գորգին և նման բաներ, որ տարած-
ված է ըմբիշների շրջանում։
Այս ամենը Բենուրն ընդունում էր ի-
րեն հատուկ անկեղծ ժպիտով, բայց՝ ա-
ռանց ավելորդ զեղումների։
Նկատվում էր, որ մարզիչները նույն
պահանջկոտությամբ չեն վերաբերվում
Բենուրին, թեև մարզվողների մեջ կային
և ուրիշ աշխարհի չեմպիոններ. հավա՞տն
էր նրա նկատմամբ։
«Դինամո» ԿԽ գլխավոր մարզիչ Բ. Ա-
ղավալյանը որքան հզոր է իր կազմ-
վածքով, նույնքան էլ կտրուկ ու ժլատ՝
խոսքի մեջ։ Բայց զարմանալի բան. Բե-
նուրի մասին խոսելիս դառնում է նույ-
նիսկ «քնարական».
— Բենիկը (այսպես են կոչում Բենու-
րին հին «գվարդիայի» ըմբիշները») աշ-
խարհի ամենատաղանդավոր ըմբիշներից
է, ընկերոջ համար վերջին շապիկը չի
խնայի։
Պարապմունքից հետո «Արևիկ» սրճա-
րանում ես տվեցի առաջին հարցը և...
մեր առջև պաղպաղակ հայտնվեց, որ
անշուշտ Բենուրին ճանաչողների «գոր-
ծըն» էր։ Մեր զրույցը այնքան անմիջա-
կան ու անկեղծ էր, որ թուղթն ու գրիչը
այս դեպքում սոսկ գրենական պիտույք-
ներ էին...
Հետագայում էլի շատ հանդիպումներ
ունեցա Բենուրի հետ և այժմ միայն հա-
վերժական «տեղի սղությունն» է ինձ հետ
պահում դրանք պատմելու գայթակղու-
թյունից։ Բենուրին բնութագրող երկու
փոքրիկ դեպք միայն։
«Սևան» հյուրանոցի (ուր տեղավորվել
էր ՍՍՀՄ հավաքականը) Բենուրի համա-
րը մտավ մանկամարդ հերթապահը և
հայրենակցի նկատմամբ սովորական ան-
քաղաքավարությամբ ասաց.
— Տղա ջան, չե՞ս գնա երկու սենյակա-
նոց համարը, էստեղ ուրիշ մարդ է գա-
լու։
— Լավ,— ասաց Բենուրը։
— Տիկին,— միջանցքում հասա կնո-
ջը,— գիտե՞ք, որ նա աշխարհի ու Եվրո-
պայի բազմակի չեմպիոն է, ու շատ ա-
վելի շքեղ հյուրանոցներ պատիվ կհա-
մարեին նրան հյուրընկալել։
— Իսկ՞, էդ տղե՞ն...
Պատմում է ՍՍՀՄ երիտասարդական
հավաքականի ավագ մարզիչ Վյաչեսլավ
Նին։
1982-ին Լեհաստանում անցկացված
աշխարհի առաջնությունում Բենուրը հան-
դիպեց լեհ ճանաչված ըմբիշ Կերպաչի
հետ։ Երբ հաղորդավարը տվեց նրա ա-
նունը, սկսվեց ծափերի մի իսկական հը-
րավառություն, որի վերջը չէր երևում։
Գորգի իր անկյունում, ժպիտը դեմքին
ծափահարում էր և... հայ ըմբիշը։ Նա
չէր խաղում, և դա գնահատեց նրբազգաց
լեհ մարզասերը։ Բենուրն այլևս օտար
չէր, և նրա հաղթանակը իսկական օվա-
ցիա առաջացրեց...
Բենուրը ծնվել է Ախալքալաքի Ա-
զավրեթ գյուղում։ Ինչպես հայկական
շատ գյուղերում, այստեղ էլ ավանդույթ
էին ըմբշամարտի մրցումները։ Բենուրենց
Ջրվեժի տանը, երբ ծանոթանում էի նրա
մարզական արխիվին, ուշադրությունս
առանձնապես գրավեց երկու լուսա-
նկար, որոնց պատմությունները նույն
քան հետաքրքիր ու անսովոր են, որքան
իրենք՝ լուսանկարները։
1984 թվական։ Սովորաբար 52 կիլո-
գրամ քաշային կարգում հանդես եկող
Բենուրը ՍՍՀՄ առաջնությանը մաս-
նակցեց 57-ում։ Չորս հաղթանակ տանե-
լուց հետո հանդիպեց Տիմիրժան Կալի-
մուլինին, որի նկատմամբ մինչ այդ բազ-
միցս առավելության էր հասել։ Առաջին
երեք րոպեից հետո Բենուրը պարտվում
է... 9:2 հաշվով։ Բոլորը զարմացած են,
ինքը՝ զայրացած։ Ընդմիջումից հետո հը-
նարքների հեղեղ թափեց հակառակորդի
վրա և... մոռացավ միավորների հաշիվը։
Վերջին վայրկյաններն են։ Նա մրցակցին
կտրել է գորգից ու տատանվում է՝ հը-
նա՞րք կատարի, թե՞ ոչ։ Վերջապես լըս-
վում է մարզչի ձայնը՝ գցիր։ ... Եվ երկու
միավորի կորուստ։
Գոտեմարտն ավարտված է։ Բենուրը
նայում է ցուցատախտակին ու ոչինչ չի
հասկանում. 11:10՝ հօգուտ Կալիմուլինի։
Ուրեմն վերջին գցումից առաջ ինքը
հաղթում էր, էլ ինչո՞ւ մարզիչը... Բենու-
րը այսօր էլ դառնությամբ է հիշում զա-
վեշտական այս դեպքը։
... Թուրք հայտնի ըմբիշ Էռոլ Քեմալի
հետ առաջին անգամ չէ, որ նա պիտի
հանդիպեր։ 1981-ին Ստամբուլի միջազ-
գային մրցումների եզրափակիչում, երբ
հաշիվը 9:0 էր՝ հօգուտ Բենուրի, 4-րդ րո-
պեին թուրք ըմբիշի կողոսկրը կոտրվեց...
Երկրորդ անգամ նրանք միմյանց դեմ
դուրս եկան Բուլղարիայում՝ Եվրոպայի
առաջնության մրցումներում։ Հայ ըմբիշը
այս անգամ հաղթեց 12:0 հաշվով։ Եվ
ահա Կիևը դարձել է աշխարհի ուժեղա-

գույն ըմբիշների հավաքականին: Եզրափակիչում հենց այս զույգը պիտի վճարկեր չեմպիոնի կոչումը: Լարվածությունն անչափ մեծ էր: Թաքցնելու բան չկա, ես բազմիցս զրուցել եմ անվանի հայ մարզիկների հետ և բոլորն էլ խոստովանել են, որ թուրք մարզիկների հետ մրցելիս պատասխանատվության առանձնակի զգացում են ապրում: Մինչև հանդիպումը դեռ հինգ ժամ կար: Ի՞նչ անել: Յուրաքանչյուր մեկն գործողության է ձգտում: Ակտիվ մարզում անցկացրեց: Արյան եռքը կարծես թե հանդարտվեց: Որ պիտի հաղթեր՝ չէր կասկածում, բայց ուզում էր գեղեցիկ ոճով անել այդ:

«Փոթորիկ գորգի վրա». առանց չափազանցության այսպես կարելի է վերնագրել այդ գոտեմարտը: Համոզվելու համար հետևենք ընդամենը 2 րոպե 25 վայրկյան տևած «իրադարձություններին»: Բենուրը սկսեց «հողմաղաց» հնարքով (2 միավոր), որ ի դեպ խոշոր մրցումներում չէր կիրառում), հետևեց գըցում մեծ կորագծով (4 միավոր), ապա հրելագցումով ստիպեց հակառակորդին «կամուրջ» ընդունել (2 միավոր): Այստեղ մի պահ արգելակենք երանելի հիշողության արագացող ընթացքը:

Ցանկացած ըմբիշ նման դեպքում կաշխատեր հակառակորդի թիակները ամեն գնով սեղմել գորգին: Բայց գորգի ապետը պիտի ապահովեր նաև գոտեմարտի էսթետիկական կողմը: Նա «կամուրջից» կտրեց հակառակորդին և գեղեցիկ գցումով վաստակեց ևս 3 միավոր: Հիացմունքից պապանձված հանդիսականները դեռ ուշքի չէին եկել, երբ հաջորդեց «գըլորում» հնարքը (2 միավոր), և մարտը դադարեցվեց:

Այս գոտեմարտը, որ ավելի շատ ցուցադրական ելույթ էր հիշեցնում, երկար կմնա մարզասերների հիշողության մեջ:

Այսօր Բենուր Փաշայանը մարզում է հանրապետության դասական ըմբշամարտի հավաքական թիմը, որը կարճ ժամանակում մեծ հաջողության հասավ: 1988-ին Թբիլիսիում կայացած ՍՍՀՄ առաջնությունում հայ ըմբիշները ընդհանուր հաշվարկում գրավեցին 4-րդ պատվավոր տեղը: Նա ոգևորված ու սիրով էր պատմում իր տղաների մասին, ու ես ցավում էի, որ մեր շատ ճանաչված մարզիկները իրենց գործով չեն զբաղվում...

Իսկ Բենուր Փաշայանը մեկընդմիշտ նվիրվել է ըմբշամարտին:




Արդեն երկրորդ հարյուրամյակն է, որ հնագետները փնտրում են Ոդիսևսի քաղաքը և պալատը: Հոմերոսն իր «Ոդիսևս» պոեմում նկարագրել է Ոդիսևսի ճանապարհորդությունները դեպի հարազատ Իթակա կղզին՝ Տրոյայի մոտ տարած հաղթանակից հետո: Այժմ, ինչպես ենթադրում է Սենտ-Լուիս քաղաքի համալսարանի պրոֆեսորներից մեկը, որը ղեկավարում է ամերիկյան և հունական գիտնականների խումբը, վերջապես գտել է Իթակա կղզու առասպելական արքայի քաղաքը Էտոս լեռան վրա:

Այստեղ գտնվել են մ. թ. ա. 23-րդ դարի և ավելի վաղ շրջանի շինությունների ավերակներ, միկենյան դարաշրջանի խեցեգործական իրեր, ինչպես նաև տաճարի մնացորդներ և ուրիշ շինություններ, որոնք վերաբերում են ավելի ուշ շրջանի՝ մ. թ. ա. 9—6 դարերին:

● Ավստրիացի ալպինիստ և լուսանկարիչ Կլաուս Նայերը պատրաստել է գունավոր նկարների մի շարք՝ նվիրված առասպելական ձնեմարդ Յետիին: Ըստ նրա հաղորդագրության՝ երկու մետր քսան սանտիմետր հասակով մի երկոտանի արարած է, որը արձակում է կոկորդային հնչյուններ և սուլոց:

Յետին վախենալով Նայերի կինոխցիկի աղմուկից, փախել է, պարզ հետքեր թողնելով ձյան վրա: Այդ հետքերը ունեն 37 սմ երկարություն և 17 սմ լայնություն:

Անցյալ տարի հայտնի ալպինիստ Մեսները հաղորդեց, որ նա տեսել է Յետիին, բայց չի հասցրել լուսանկարել նրան:



Լուսանկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՆՅԱՆԻ

**Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱԹԱԲԵԿՅԱՆ Ն.

 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806